1916 № 25.—Յունիսի 19

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաքրդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Գասի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար Թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Ներքին տեսութիւն

## ԳԻՒՂԱՑԻՆԵՐԻ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԻ ՀԱՒԱՍԱՐՈՒԹԵԱՆ ՕՐԻՆԱԳԻԾԸ ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՅՈՒՄ

—

Առաջի նիստին այդ առթիւ խօսել է միայն Վ. Մակլակովը. նրա ճառը ներշնչուած է խոր համոզմունքով և ճոխացրած դեղեցկութիւններով։

Յաջորդ նիստին օրինագծի զեկուցող Մակլակովին պատասխանում է Ե ա գ ո դ ի ն ս կ ի ն, ասելով, որ զեկուցողը սկսել է կենաց բաժակով, բայց վերջացրել է գամբանականով։ Նա շեշտում է, թէ բաւական չէ դնել բարդել գիւղացիների իրաւունքների անհաւասարութեան չարիքը անցեալի վրայ, այլ և անհրաժեշտ է ոչնչացնել այդ չարիքը հենց այսօրուանից։

Ռ ո դ ի չ ե ը տալիս է գիւղացիների ճորտութեան պատմութեան մի հակիրճ տեսութիւն, ընդգծելով, որ դասակարգերի իրաւունքների հաւասարութեան գործը անցեալում խոչընդոտի է հանդիպել ճորտատէրերի կողմից, այժմ էլ նոյն տխուր դերն են կատարում խոշոր կալուածատէրերը։ Ֆրանսական ազնուականութիւնը պարզել է հաւասարութեան դրօշակը։ Հասել է ժամը, որ Ռուսաստանի ազնուականութիւնը հետևի այդ օրինակին։

Գիւղական խմբի ներկայացուցիչ պրոգրեսիստ Կ ա լ ի ն ի ն ը կարգում է գիւղացիների յայտարարութիւնը։ Գիւղական խումբը համաձայն չէ այն մտքի հետ, որ գիւղացիք կռուի դաշտում առաջին տեղն են բռնում, իսկ ներսում, իրաւունքի տեսակէտից—վերջին շարքերը։ Զը պէտք է լինի առաջին և երկրորդ կարգի բնակիչ, և նրանք, որոնք հայրենիքի պաշտպանութեան առաջի շարքերումն են կանգնած, արժանի են նաև առաջին կարգի քաղաքացի լինելու։

Ս.-դեմ. պատգամաւոր Զ խ ե ն կ է լ ի ն համեմատում է Մակլակովին իր եղբայր նախորդ նախարարի և Ստոլիպինի հետ, շեշտելով, որ դուրս հանելով ներկայ օրինագծից հրէական հարցը, զեկուցողը ապացուցել է, որ հետևում է յիշեալ նախարարների քաղաքական քայլերին հրէական հարցում։

ԿԵՐԵՆՍԿՈՒ ՃԱՌԸ։

Կերենսկին իւր ճառով ապացուցում է օրինագծի չափազանցրած նշանակութիւնը։ Նրա կարծիքով «այդ օրինագիծը գիւղական դասակարգի գործանման օրինագիծ է»։

«Յիրաւի կամս Բօբրինսկին ծիծաղում է իր մէջ այս օրինագծի ժանկական սկզբունքների վրայ, այն է՝ ոչ բոլոր դասակարգերի ոչնչացում, այլ միայն մէկի, ամենաթշուառի—գիւղացութեան։ Եթէ դուք հասկանայիք իրաւունքը և ճշմարտութիւնը, դուք կսկսէիք ամենից առաջ ազնուականների արտօնութիւնների ոչնչացումից, ինչպէս առաջին Պետակ. Դուման, ահա ինչպէս պէտք է դնուէր իրաւունքների հաւասարման հարցը»։

Միւս ճառախօսներից հետաքրքրական Պ ո ս տ ն ի կ ի ո վ ի ճառը։

Հեղինակը զարմանում է, որ տասն տարի է ինչ այդ օրինագիծը պահւում է Պետական Դումայում և միայն այժմ երևան է գալիս. բայց կառավարութիւնը դարձեալ մտադրութիւն ունի արխիւ նետելու, առարկելով թէ գիւղացիների իրաւունքների հաւասարութիւնը վաղաժամ է։

«Այդ նշանակում է—ասում է հեղինակը—չզգալ ժողովրդական կեանքի բաբախող զարկերակը»։

Մահմեդականների պատգամաւոր Ա խ տ ի ա մ ը յայտնում է, չնայած որ օտար ազգերի հարցը իր սրտին մօտիկ է, բայց և այնպէս չի կապում այդ հարցը օրինագծի հետ, որպէս զի վերջինիս դրական լուծումը խոչընդոտների չենթարկուի։

Աճէմեանը անհրաժեշտ է համարում կրկին վերադառնալ գիւղացիների ազատութեան 1861 թուի օրէնքին։ Այն օրուանից մինչև այժմ ստեղծուել են շատ երկրորդական օրէնքներ, որոնք հաստատել են գիւղացու իրաւազուրկ դրութիւնը։

«Այդ երկրորդական օրէնքների կասեցնելով է միայն, որ կարելի է գիւղացիներին ազատութիւն տալ»։

Ապա մնում է միայն հաւասարեցնել գիւղացիների և միւս դասակարգերի իրաւունքները. այդ հաւասարութիւնը կը սկսուի այն ժամանակ, երբ գիւղացիները մեր կեանքում իրենց քաղաքական և հասարակական դերը կսկսեն խաղալ. բայց այդ կարելի է միմիայն այն ժամանակ, երբ գիւղացու համար կը ստեղծուի օրէնք»։

Դուման անցնում է օրինագծի կէտերի առանձին քննութեան։

Չխենկէլին պահանջում է սոց.-դեմ. անունից ամբողջովին փոփոխութեան ենթարկել օրինագծի առաջին կէտը, տալով Ռուսաստանի բոլոր հպատակներին միանման քաղաքական իրաւունքներ, ոչնչացնելով բոլոր դասակարգային, ազգային և դաւանական սահմանափակումներն ու արտօնութիւնները։ Հեղինակը խոստովանում է, որ իրա առաջարկը ընդունուելու չէ, բայց և այնպէս առաջարկելով Դումային, ասում է նա, այդպիսով ժողովուրդին է դիմում և ոչ թէ Դումային։

Ընդունւում է օրինագծի I բաժանմունքը, որով գիւղացիները իրաւունք ունին մտնելու բոլոր կրթական, զինուորական և այլ պետական հաշւում գոյութիւն ունեցող հիմնարկութիւնները։

Եւ այդպէս՝ ընդունւում է օրինագծի բոլոր կէտերը բացի մի քանիսի, որոնք ենթարկւում են աննշան փոփոխութիւնների։

Գ. Օ.

## ՀԱՅԵՐԷՆ՝ ՀԱՅՈՒԹԻՒՆ

### Ա

Հայերէնով մեզանում երբեմն զբաղւում են։ Շատերը զանազան տեսակէտից մօտենում են խնդրին և որոշ լուծում են որոնում կամ գտածը առաջարկում։ Ամենից շատ խօսում են օտարախօսների վրայ՝ լինեն նրանք հայերէն իմացող թէ չիմացող։ Ուրիշ դպրոցների հայերէնն են քննադատում և գտնելով որոշ թերացումներ՝ պահանջներ են դնում։ Մի խօսքով՝ շատ քիչ բացառութեամբ՝ բոլորի աչքը օտարախօսների վրայ է, կամ աւելի ճիշտը՝ հ ա յ ե ր է ն չ ի մ ա ց ո ղ ն ե ր ի։

Ինչ-որ իրաւունքներից են խօսում. հայոց լեզուի իրաւունքներից։ Կարծես չի կարող պատահել, որ մեզ չը տան մեր ցանկալի իրաւունքները։ Կամ իբրև թէ քիչ իրաւունքներ ունենք հայերէն խօսելու և սովորեցնելու։ Եւ իբրև թէ՝ եթէ մեզ կատարեալ իրաւունքներ տան՝ հենց այն է, հայախօսութեամբ կը համակենք մեր բոլոր խաւերը։

«Ցաւոտ աչքին ծուխը մահանայ»։

Թողնենք, ի սէր Աստուծոյ, այս մահանաները, գոհ լինենք, գոնեա առժամանակ, մեր լեզուի որոշ իրաւունքներով, հանգիստ թողնենք հայերէն չիմացող օտարախօսներին, որոնք չեն էլ իմանում թէ ինչու պէտք է հայերէն խօսեն, և ինչ հաճոյք է հայերէնը՝ և անցնենք՝ ձկան հոտած տեղին՝ գ լ խ ի ն։

Ձուկը գլխից է հոտած։ Ահա սրան պէտք է ուշ դարձնենք։ Մենք պէտք է սպասէինք, որ հայախօսութիւնը լսուէր գոնէ մեր... հայ դերասանների, հայ գործիչների, հայ դպրոցների ուսուցիչների, հայ հեղինակների, հայ... քահանաների բերնում։ Խօսքը բացառութիւնների մասին չէ։

Եթէ չեմ սխալւում՝ հայ դերասանները ի ր ա ւ ո ւ ն ք ո ւ ն ե ն... հայերէն խօսելու։ Բայց նրանց խօսակցականը հայերէն դերը կատարելուց յետոյ, կուլիսների ետևը (կողմնոցում), փողոցում և տանը մ ե ծ մ ա ս ա մ բ հայերէն չէ։ Հայերէն չը խօսելը նրանց մէջ մի տեսակ ձև է, բոն-տոն, ազնուականութեան նշան, էֆէկտի միջոց։ Ի՞նչն է ստիպում նրանց այդպէս վարուելու։ Մի՞թէ նրանք իրենց հայ արուեստով ու հայերէնով Աղամեանից աւելի հռչակուած են։ Փառք Աստուծոյ, հիմի ժամանակները գոնէ դերասանների համար այնքան փոխուել է, որ նրանց ապագայ կենսագիրները Լէօի, Վրոյրի և Բաղդասարեանի պէս չը պիտի հ ա յ դերասանի գնահատութիւնը գտան որոնելու ռ ո ւ ս մամուլի մէջ և շարունակ յիշելու՝ «Одес. Вѣстникъ»-ը Աղամեանի մասին ասում է... «Новорос. Тел.»-ը նրա մասին ասում է... «Москов. Листокъ»-ը ասում... «Искуство»-ն ասում է... այսինքն շարունակ ռ ո ւ ս թերթեր, ռ ո ւ ս կարծիք, ռ ո ւ ս գնահատութիւն (որովհետև հայերի գնահատութեան մասին խօսելիս՝ աւելի հալածանքի մասին պիտի խօսեն)։ Բայց չընայած այն բանին, որ հ ա յ Աղամեանը աւելի ռ ո ւ ս մամուլի ծնունդն է և աւելի նրան է պարտական իր հռչակով, բայց այդ հալածուած հ ա յ ը իր գնահատող ռ ո ւ ս ի առաջ հ ա յ ե ր է ն էր խաղում, հայ լեզուն և հայերէնի հմայքն էր ստեղծում։ Ասում են նա գեղեցիկ հայերէն էր խօսում բեմի վրայ և կեանքում։ Ո՞րտեղից իջաւ այդ հայերէնը. երկնքի՞ց։ Եւ առհասարակ ժամանակը չէ հասկանալու թէ ինչպէս են մեր արևմտահայերը ձեռք բերում գեղեցիկ հայախօսութիւնը։ Վաղո՜ւց ժամանակ է։ Եւ եթէ թոյլ տան ինձ ես համեստաբար կը յայտարարեմ, որ արևմտահայերը հայերէնը սիրում, սովորում են, շարունակ մշակում են և մ ի շ տ խ օ ս ո ւ մ ե ն. որպէսզի լեզուն չը ժանգոտուի և միշտ փայլի։ Առաւելապէս հայախօսութիւնը պիտի մշտական լինի մեր սկսնակ դերասանների մէջ, որոնք հայերէն մի երկու բառ կարգին արտասանել չեն իմանում և գրեթէ անգրագէտ են։ Ի հարկէ երբ ասում ենք, որ մեր դերասանները հայերէն չեն խօսում՝ դրանով չենք ուզում հասկացնել որ օտար լեզուն իմանում են։ Աւելի վատը, ամենավատը հենց այն է, որ օտար լեզուն էլ լաւ չեն իմանում. իսկ սկսնակները—՝ Աստուած ազատէ։

Հայերէնը չեն գործածում նաև շատ հայ գործիչներ. այնպիսի գործիչներ, որոնք հ ա յ կ ե ա ն ք ի հ ա մ ա ր են ա շ խ ա տ ո ւ մ։ Որքան մեզ յայտնի է՝ ոչ ոք նրանց չի արգելում հայերէն խօսել։ Եթէ լաւ չեն իմանում՝ ի ր ա ւ ո ւ ն ք ո ւ ն ե ն ուսուցիչ վարձելու և սովորելու։

Ի ր ա ւ ո ւ ն ք ո ւ ն ե ն հայերէն խօսելու իրենց զաւակների հետ նաև մեր այն ուսուցիչները, որոնք չեն էլ իմանում այն լեզուն, որ սովորեցնում են իրենց զաւակներին կամ որի վրայ կոտրել են ուզում նրանց թոթովախօս լեզուն։

Իր ծուխի հետ, իր Ա ւ ե տ ա ր ա ն ի լեզուով (բառացի չը հասկանանք, ոչ գրաբար) ի ր ա ւ ո ւ ն ք ունի խօսելու հայ քահանան, իրաւունք ունի իր ընտանիքում իր զաւակների հետ հայերէն խօսելու, հայերէն դաս տալու օտար դպրոցի հայ աշակերտներին՝ կրօնը։

Հայ հեղինակը իրաւունք ունի հայերէնն անելու իր զաւակների լեզուն և նրանց հետ խօսելու այն լեզուով, որով ինքը գըրում է։

Երբ պետական դպրոցում հայերէնի ցենզ ստանալու համար հայերէն դասաւանդութեան մեթոդի մի շարադրութիւն է պա-

հանջում և դպրոցի ռուս վարիչը ասում է որ շարադրութիւնը հայերէն պէտք է լինի՝ այդտեղի հայ ուսուցիչը իրաւունք ունի քննուողին խորհուրդ չը տալու որ շարադրութիւնը հայերէն չը լինի։

Հայ դպրոցների ուսուցիչները, տեսուչները, հոգաբարձուները, թեմական տեսուչները իրաւունք ունեն իրենց տղաներն ու աղջիկները ղրկելու այն հայ դպրոցները, որոնց համար գլուխ են պատռում հոգաբարձու ընտրուելու, պաշտօն վարելու, ղեկավարելու և նրան օրինակելի դարձնելու։

Հայերէն խօսելու իրաւունք ունին իրենց զաւակների հետ և հայ դպրոց տալու մեր հայ ազատագրութեան նուիրուածները։

Ի հարկէ նրանք առայժմ փոքրամասնութիւն են։ Բայց արդէն սկսում են հոսանք դառնալ։

Բայց ժամանակ է, որ ձիս հեծնեմ և փախչեմ. փախչեմ ոչ թէ փայտերից ու ատրճանակից, այլ... սոփեստ բացատրութիւններից, որ ամեն անգամ լսում էք այդ մարդկանց բերանից։ Այսինքն՝ մենք մեր երեխաներին յետոյ պէտք է սովորեցնենք հայերէն. նրանք հոգով հայ կը մնան. մեր դպրոցում հայերէն սովորեցնում ենք. թէև չենք խօսում հայերէն՝ բայց գիտենք. ծնողները, ընտանիքը մեծ նշանակութիւն ունեն։

Մի շարք այսպիսի «նիւխա» ապահովութիւններ... Դեռ սրանց մէջ աւելի «խելացի»-ները կան։ «Մենք չենք ուզում որ մեր զաւակները մեզ պէս անապահով լինեն։ Մենք ուզում ենք մեր զաւակներին բարձրագոյն կրթութիւն տալ։ Ի՞նչ իրաւունք ունենք մեր զաւակներին դժբախտացնելու՝ հայոց դպրոց տալով։ Շատ էլ լաւ էք ասում՝ «ազգային ոգի», բայց այդ իդէալական բան է, բարդ բան է, անիրագործելի բան է, ամեն մարդ չի կարող դժբախտացնել իր սերունդը, հեշտ է ասելը, բայց իրագործելը դժուար է, մենք այդքան դպրոց էլ չունենք, և այլն և այլն...»։

Կամ՝ «մենք պէտք է սովորենք և սովորեցնենք պետական լեզուն»։ Իբր թէ կը գտնուի մի ռուսահայ, որ չասի թէ ամեն ռուսահայ պարտաւոր է իմանալ պետական լեզուն։ Կամ՝ «արտասանութիւնը պէտք է կոտրել, յետոյ դժուար կը լինի»։ Իբրև թէ ուրիշ լեզուի արտասանութեան վարժեցնելով վերջը իր մայրենի լեզուի արտասանութիւնը չի խանգարուի, կամ մեծ նշանակութիւն ունի արտասանութիւնը, կամ հրէան, վրացին, թուրքը, յոյնը մեզնից վատ քաղաքացիներ են որ վատ են արտասանում պետական լեզուն և կամ ով լաւ է արտասանում նա է միայն սիրում ու պաշտպանում մեր ընդհանուր պետութիւնը։ Կամ իբրև թէ չի կարելի երկու լեզուն էլ և՛ հիանալի արտասանել, և՛ գիտենալ, և՛ խօսել։ Եւ վերջապէս, իբր թէ հայերէն խօսելը կօշիկ առնելու պէս հեշտ բան է. «թող մեայ խանութում, յետոյ, երբ ուզենանք կառնենք»։ Ուրեմն դուրս է գալիս, որ հայերէնը յետաձգելու (ասել ալէքսանդրապոլցին՝ «վրէս գրելու») համար կայ կեանքի մի այլ պահանջ, որով հայերէնը դըրւում է սնդուկը և պինդ պահւում, նա դառնում է իմանալու և ոչ թէ խօսելու լեզու, դպրոցն էլ դառնում է ոչ իր, այլ ուրիշների դպրոց։

Ուրեմն հայերէնն ու հայ դպրոցը այն մարդկանց համար է, որոնք ուզում են իրենց որդիներին «դժբախտացնել կամ հնար, խելք (ձեր չափ խելք) չունեն «բախտաւորացնելու»։ Ուրեմն հայ մնալը, հայերէն խօսելն ու հայ դպրոց ուղարկելը մի «զոհաբերութիւն» է, «իդէալական» բան. ուրեմն ով որ ունի մի կտոր խելք»՝ նա իրաւունք չունի իր զաւակը «դժբախտացնելու»։

Ուրեմն հայ դպրոցներում հոգաբարձու, ուսուցիչ, տեսուչ, թեմական տեսուչ լինելը մի նպատակ ունի. ապահովել, քաջալերել այդ «դժբախտարանները»՝ եթէ դրանք գաղափարական մարդիկ են. կամ դրանց համար հայ դպրոցը մի վայր է, ուր ոմանք ընտրւում են, պաշտօն են ձեռք բերում փառքի, անձնական «ջրի», ռոճիկի համար։ Այլ սոփեստութիւն լուարուք. «հայ դըպրոցներում սովորում են այն խաւերը, որ միջոց չունեն այլ տեղեր ձգտելու»։ Իսկ եթէ միջոց ունենա՞ն։ Իսկ եթէ ամենուրեք բացուեն ձրի այլ ուսումնարաննե՞ր։ Ուրեմն ինչ. հայերէնը պահպանելու համար մեզ մնում է ցանկանալ, որ բոլոր հայերը չքաւոր, անխելք, «անխիղճ» և «իդէալական» լինեն։

Դէ հիմի կացէք այդտեղ և թոյլ տուէք մի համեստ հարց առաջարկելու։

Ո՞ւմ համար է վերջապէս հայերէն խօսելն ու զաւակները հայ դպրոց ուղարկելը։ Եթէ յետաձգելը, չը խօսելը, հայ դպրոց չուղարկելը գործնական, յարմար, խելացի հաշիւ է կամ այդպէս վարուելը վնաս չունի, ընտանիքը մեծ նշանակութիւն ունի, կամ կարելի է հայերէն իմանալ բայց չը խօսել՝ այն ժամանակ ինչու չէք աշխատում, որ ուրիշներն էլ ձեզ չափ գործնական, խելացի լինեն։ Ինչու դուք էք ուզում բացառութիւն լինել և չէք աշխատում որ բոլորս էլ բացառութիւն լինենք։

Ո՛չ։ Այստեղ թաղուած է մի երևելի շան գլուխ։ Մեր ամբողջ ազգային պարտականութիւնը մենք ուզում ենք դցել ուրիշի վրայ։ Ես թող չանեմ, ես թող բացառութիւն լինեմ, ինձ կարելի է թոյլ տալ—բայց ուրիշնե՛րը, ո՛վ հայեր, հայերէն խօսեցէք, հայ դպրոցներ տուէք ձեր որդիներին։

Բաւական է սոփեստութիւնը։ Հայերէն իմացողները, բայց չըխօսողները, հայ դպրոց համակրողներն ու այնտեղ ծառայողները, բայց իրենց զաւակները այնտեղ չուղարկողները այն դասալիքներն են, այն կարապետները, որոնք տանում են իրենց ետևից ուրիշներին։ Նրանք սկիզբն են վերջի։ Նրանք իրենք հայ են, ոմանք նոյնիսկ հոգով հայ, բայց նրանք իրենց սերունդին իբրև ժառանգութիւն ոչինչ չեն թողնում։ Նրանք կարծում են՝ թէ ինչ որ իրենք են, իրենց որդիքն էլ նոյնը կը լինեն։ Հոյակապ մոլորութիւն։

Դէմիր

(Կը շարունակուի)

## ՏԱՃԿԱՀԱՅ ՈՒՍՈՒՑԻՉ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐԻ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Փախստական դպրոցներում տարուայ ամբողջ դպրոցական գործունէութիւնը վերլուծելուց յետոյ, կարևոր է խորհել տաճկահայ դպրոցները չը թողնելու պատահական ոյժերու և ոչ սրտացաւ խմբակցութիւններու քմահաճ վերիվարումներուն ենթարկուած։ Այդ գործը այսօր իր վրայ է վերցնում, պատասխանատուի գիտակցութեամբ, տաճկահայ դպրոցներու ամբողջ ուսումնական և խորհրդակցական ձայնի իրաւասութեամբ տնտեսական բաժիններու բարոյական պատասխանատու և անպայման համարատու գործը։

Նահանջի սոսկալի ազդեցութեան ենթակայ տաճկահայ ուսուցիչը դեռ մէկ տարի առաջ չէր էլ կարող մտածել իր շրջապատէն դուրս, իսկ հիմա երբ անդրադառնում է կատարուած իրականութեանց, և միանգամայն տեսնում է ժխտական արդիւնքը և կամաց կամաց այլասերուող իր հարազատները, ցաւը սրտում աճապարում է ժողվել, գիզել, դէմ առնելու այն մեծ ա՛ղէտին, որը կոչւում է ազգային մեծ աղէտ։ Այսօր մէկ տեղ եկած տաճկահայ ուսուցչութիւնը կազմած է ուսուցչական միութիւն՝ գործելու յառաջիկայ տարեկիցին որոշ ձեռներէցութեամբ և որոշ իրաւունքներով։ Կազմուած միութիւնը խորին վշտով տեսաւ այն մեծ կորուստները, որոնց ենթարկուած է տաճկահայը ներկայ աննպաստ պայմաններուն մէջ և նա զգա՛ց այն մեծ պարտականութիւնը և որոշեց տանել և կատարել մեծ պարտականութիւնը. կազմելով իր ծրագիրը Միութիւնը ընդգծեց հետևեալ նպատակները. ա. Հոգ տանել տաճկահայ դպրոցական սերնդի մտաւոր և ֆիզիքական կրթութեան. բ. Ջանալ պահել տաճկահայ գրականութիւնը և լեզուն գաղթականական դպրոց-

ներում. գ. Բարելաւել իր անդամներու տնտեսական դրութիւնը. դ. Զարկ տալ անդամներու մտաւոր զարգացման։

Ուսուցչ. Ընդհ. ժողովը իր չորս նիստերով երկար վիճաբանութիւններէ վերջ, վերլուծեց կազմուած ծրագրի բոլոր յօդուածները և բոլորի համաձայնութեամբ անցկացրեց կարգ մը որոշումներ, տալով լիազօրութիւն Վարչութեան՝ գործելու Միութեան նպատակներու շուրջը։

Միութեան Ընդհ. ժողովը իր վերջի նիստով երկար զբաղուեցաւ առաջիկայ ուսումնական տարեշրջանի գաղթականական դպրոցներու և որբանոցներու կազմութեան գործով. նկատելով՝ որ ներկայ ուսումնական տարեշրջանին Կովկասում բացուած գաղթականական դպրոցներէն ամենէն բաւարարը իր տեսակներու մէջ Կով. Ուսուցչ. Միութեան կից Ուսուցչ. Յանձնաժողովի բացած դպրոցներն են, ուր եղած են որոշ կարգադրութիւններ թէ ուսումնական և թէ տնտեսական բաժիններու համար։ Այդ առթիւ Ընդհ. ժողովը անցկացրեց հետևեալ որոշումը. Փախստականների դպրոցները կառավարուելու են այսուհետև Կով. ուսուցչ Յանձնաժողովի և տաճկահայ Ուսուցչ. Միութեան Վարչութեան հետ համախորհուրդ, և այդ առթիւ ջանալ միջոցներ ձեռք առնել կատարելու դիմումներ ուր որ պէտք է՝ բոլոր ուսումնական գործը յանձնել տալու յիշեալ յանձնաժողովին։ Ընտրուած Վարչութեան անդամներն են՝ պ. պ. Արսէն Հացագործեան, Արսէն Արծրունի, Կիրակոս Երիցեան, Սպիրիդոն Ժամկոչեան, Արամ Շալչեան, օր. Համասփիւռ Միրզախանեան և օր. Սերինէ Խրիմեան։ Փոխանդամներ՝ Ալէքսանդր Մկրտչեան, Խաչիկ Գէորգեան և Մաղաք Շալչեան։

Միութեան Վարչութիւնը լիայոյս է, որ Կովկասի բոլոր իրաւասու մարմինները ընդառաջ պիտի գնան նորակազմ Միութեան բարի ցանկութեանց և ձեռք առնեն բոլոր միջոցները Միութիւնը իրաւասու դարձնելու։

Էն-Սար

---

## ԳԱՒԱՌ

ՀԻՆ-ԲԱՅԱԶԷՏԻ ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ։—Ինչպէս յայտնի է, պատերազմի սկզբից ի վեր Բայազէտ-Ալաշկերտ շրջանը մի քանի անգամ ենթարկուեց գաղթի անօրինակ սարսափներին՝ կրելով սրա հետ կապուած բոլոր զոհողութիւնները։ Առաջին գաղթը, որ տեղի ունեցաւ նոյեմբեր 23-ին 1914 թուի, այնքան չազդեց ժողովրդի տնտեսութեան վրայ, քանի որ ժողովուրդը հասաւ մինչև Օրգով և անմիջապէս յետ դառնալու հնարաւորութիւն ստանալով՝ վերադարձաւ, փրկելով իր նիւթական միջոցները կողոպուտից և աւազակութիւններից։ Երկրորդ գաղթը, դեկտ. 21-ին 1914 թուի, սոսկալի հարուածներ հասցրեց։ Ձիւն ձմեռուայ բուք ու բորանին ժողովուրդը բռնած երեխաների ու կանանց ձեռքը, դուրս եկաւ քաղաքից, թողնելով չէն տները հացի, պանիրի, իւղի առատ պաշարով, խանութները մնացին լիքը ապրանքներով, որ ենթարկուեց վայրի խուժանի կողոպուտին։ Ճանապարհին մեծամեծ աղէտների ենթարկուելով, տալով մարդկանց ու երեխաների բազմաթիւ զոհեր, հասաւ Երևանի նահանգը, ուր ենթակայ եղաւ քաղցին ու վարակիչ հիւանդութիւններին։ Հազիւ մի փոքր ժողովուրդը շունչ առաւ, կազդուրուեց, երբ դրութիւնը հայրենիք վերադառնալու համար մի փոքր ապահով նկատուեց, ժողովուրդը՝ կարօտ իր հայրենիքի դեռևս մնացող օջախներին ու քանդուած տներին, վերադարձաւ դէպի երկիր։ Բայազէտը իր Արծափի, Քորան, Մուսուն գիւղերով վերադարձաւ երկիր ամբողջ ընտանիքով։ Հազիւ սկսուեցին կենսական աշխատանքները, վար ու ցանքը, քանդուած տների վերաշինումը, երբ սկըսուեց վերջին ահեղի և կործանարար փոթորիկը—Վանի գաղթը յուլիսին, որին հետևեց և Բայազէտը Այս գաղթը ոչ միայն զըրկեց մեզ տուն ու տեղից, կրկին անգամ թափառաշրջիկի ցուպը մեզ տալով, այլ և կենսական մթերքները սպառուեցին շատ կարճ միջոցում, վար ու ցանքս անելու հնարաւորութիւն միանգամայն չեղաւ, և եղած բնակութիւնները վերածուեցին աւերակների չեղջերի։ Այս գաղթը խլեց Բայազէտից 600-ի չափ զոհեր, թողնելով 100-ի չափ որբ անտէր ու անտիրական ընտանիքներ։ Շրջանի 120 գիւղերը դատարկուեցին բառիս բուն նշանակութեամբ, երկիրը դարձաւ մի հսկայ անապատ։ Սակայն չնայելով այս դժոխային վիճակին, Բայազէտը կրկին վերադարձաւ հայրենի օջախների վրայ։ Ու այս ծանր ժամանակամիջոցում ժողովուրդը չստացաւ ոչ պետական և ոչ ազգային որևէ նպաստ, չնայած մի շարք դիմումներին։ Ներկայ կացութիւնը շատ դառն է. կենսական մթերքները ոչ միայն թանգ ու անմատչելի են ժողովրդին, այլ և մթերքներ չկան։ Ժողովուրդը ոչ մի պարապմունք չունի և որև է միջոց չկայ գիւղատնտեսական աշխատանքներ սկսելու Մահացութեան մի քանի դէպքեր առաջ եկան քաղցից։ Այս հիւծուած, քայքայուած ժողովուրդը արժանի է օգնութեան և ուշադրութեան, առանց որի դրութիւնը խիստ երկիւղալի է, որովհետև ժողովուրդը կանգնած է նոր դժբախտութեան առաջ—գաղթի և այս անգամ ոչ թէ պատերազմական հանգամանքներն են մղում դէպի գաղթը, այլ քաղցը և սովի հեռանկարը. արդէն 23 ընտանիք Բայազէտից գաղթեցին Դիադինի շրջանը, ուր նպաստ տրւում է։

Ժողովրդի կացութիւնը ներկայ պայմաններում խիստ լուրջ է և անհրաժեշտ է անմիջական օգնութիւն, առանց որի դրութիւնը ողբերգական է դառնալու։ Այս անելանելի և յուսահատական վիճակին վերջ տալու նպատակով, ժողովուրդը իր մայիս 22-ի համախոսականով ընտրեց մի պատգամաւորութիւն ներկայ վիճակը յայտնելու Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսին, ընդհանուր գաղթականների լիազօր գեներալ Թամամշևին, Երևանի Եղբայրական Օգնութեան նախագահ Խորէն եպիսկոպոսին և Թիֆլիսի Ազգային—Բարեգործական—Նպաստամատոյց Ընկերութիւններին։ Պատգամաւորութիւնը դիմել է վերոյիշեալ հաստատութիւններին և հաւատացած է, որ թէ ազգային և թէ պետական հաստատութիւնները պիտի լուրջ ուշադրութեան առնեն Բայազէտի վիճակը, այլապէս հայութեան այս մի փոքրիկ բեկորն էլ տնտեսական նեղ կացութեան և սովի զոհ կը գնայ։

1916 թ. մայիս, Բայազէտ    Մ. Ծ.

* * *

ՍԵՒ ՔԱՐ.—Սոված կը մնան... Շատ գրուեցաւ գաղթականների դրութեան պակասաւոր կողմերի, նիստ ու կացի. հնարաւոր չափով մը բարուոք դրութեան հասցնելու մասին։ Եղած են—մասնաւորապէս վերջերս—խորհրդակցութիւններ այս «ցաւալի» կացութեան առաջն առնելու իբրև կտրուկ միջոց սպառողական խանութներ բանալու շուրջ։

Խորհուրդներ գեղեցիկ են, մարդու կեանքերին յոյս տուող, բայց երբ ցարդ չեն իրագործուած. երբ խօսքերից դէնը արմատացած միջոցներ չեն կիրարկուած և վերջապէս երբ սոված նոյն սոված կը մնայ, անյոյս փաղուայ իր կեանքին, այս բոլորը կը թելադրեն ասելու, որ եթէ իսկապէս արժէ «մնացորդներ»-ին տալ ուժեղ մկանուներ, բաւարար սնունդ, հարկա աճապարելու է վայրկեան առաջ միջոցներ ձեռք առնել։ Այլապէս նպաստի այն քանակը, որ այժմ տրւում է, բացարձակապէս անհնարին է դարձնում ապրել այս սուղ պայմանների մէջ։

«Մունաթով, կէս փոր» խօսքեր են, որոնք փսփսուկով լսւում են դողդողացող շրթունքներից. «ապերախտ» անուանուելու ամօթխածութիւնը մնացնում է իրենց և չեն կարող խօսել, բայց չեն էլ կարող ապրել։

Գրելով այս տողերը՝ նպատակս չէ մաղաչափ անգամ ստուեր ձգել տրուած զոհողութեանց այն չափի վրայ, որ դեռ կը շարունակուի ռուսահայ եղբայրների և հովանաւորող պետութեան

կողմից․ քանի որ արդէն չեն պակասում գոհունակութեան արտայայտութիւններ։

Սև Քար V/22 Տրդատ

***

ՔԱՐՈՒԱՆՍԱՐԱ (Ղազախ), 3 մայիսի 1916 թ.—Կ. Հ. Բ. Ը-թեան գաւառներին տուած բարիքներից մէկն էլ գրադարան-ընթերցարաններն են, որ ընդհանուր առմամբ մեծ խթան են կեդրոնից հեռու խուլ վայրերի ազգաբնակութեան զարգացման և առաջադիմութեան։

Այդ տեսակէտից ես Ղազախի շրջանն ունի իր մասն ու բաժինը։ Քարուանսարայում բացուած գրադ.-ընթ. լայն չափերով նպաստում է շրջանի թէ տեղացի բնակչութեան և թէ գաղթական համայնքներին։ Շատ մօտիկից ծանօթ լինելով գրադ.-ընթ.-ի մի քանի ամսուայ գործունէութեան, պարտք եմ համարում ցոյց տալ, թէ որքան օգտակար և արդիւնաւոր է եղել տեղիս հասարակութեան։

Գրադարանը չունի պահանջուածի չափ գրքեր, պակաս են շատ տեսակներ, ստացւում է 8 թերթ, երկուսը նախագահի անունով, որ նոյնպէս մնում է գրադարանում։ Թերթերից օգտւում են առհասարակ թէ տեղի և թէ շրջանի մօտիկ գիւղացիները, մանաւանդ գաղթականները, որոնք օրնիբուն իրենց քաղցր ժամերն և սփոփանքն այդտեղ են գտնում, թէ կարդալով և թէ լսելով։ Առանձնապէս գրադ.-ընթ. մխիթարանքի մի վայր եղած է մեր փախստական եղբայրներին։

Գրքերից մեծ չափով օգտւում է գիւղի ծխական, գաղթական և պետական դպրոցների աշակերտութիւնը, նաև շրջանի գաղթ. ուսուցիչները, աչքի ընկնող անհատներ և այլն։ Այս բոլորը քիչ բացառութեամբ ձրի է կատարւում։

Շատերի կողմից անարգանքի և արհամարանքի ենթարկուած այս հաստատութիւնը, շնորհիւ վարչութեան նախագահի անդուլ ջանքերի, երթալով առաջադիմում է և աւելի ընդարձակւում։

***

Մեծ հաճոյքով Վանի շրջան գնացող գաղթականներից շատերը անյոյս և ձեռնունայն ետ կըդառնան, առարկելով, որ անօթութիւնն ու անապահովութիւնը ստիպում է այդպէս վարուել. Վերադարձողներից շատերը ներկայումս սկսել են գնալ մօտակայ գաւառներն աշխատանք անելու։

Քարուանսարայում ևս որոշուած է բանալ սպառողական խանութ. տեղիս գաղթականութիւնը շատ ուրախ է, որ այսուհետև պիտի ազատուի անգութ առևտրականների ճիրաններից։

Գաղթական

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

—

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Թիֆլիսի Վոլժսկի-Կամսկի բանկի բաժանմունքից, նոր շինութեան տեղափոխուելու առթիւ 1000 ռ.։ Այդ գումարից Խորհուրդը յատկացրել է 500 ռ. Ը-թեան նպաստով պահուող դպրոցներին, 500 ռ. «Համբաւաբեր» շաբաթաթերթին։

***

Հանգ. Նիկողայոս Միրիմանեանի կտակակատար ճարտարապետ Ա. Մելիք-Բեգլարեանից շնորհակալութեամբ ստացուած է յիշեալ հանգուցեալի Ը-թեանը կտակած հետևեալ արժէթղթերը՝ ա) 17 բաժնեթուղթ (ակցիա) Առևտրական բանկի, որից 19-ը առանց կտրօնների (կուպոնների), իսկ 4-ը 1916 թ. կտրօններով, բ) 10 հատ առաջին մասն. Լոմբարդի ակցիաներ 1916 թ. կուպոններով. գ) Մի մուրհակ 500 ռ., որից 100 ռ. ստացուած է Ա. Բ. Ֆիշերի ստորագրութեամբ ցպահանջ. դ) Կանխիկ դրամ—Առևտրական բանկի 1916 թ. բաժնեթղթերի (ակցիաների) շահաբաժին (դիւիդենտը) 425 ռ. և մասնաւոր գրաւատան (լոմբարդի) 1916 թ. բաժնեթղթերի (ակցիաների) շահաբաժինը (դիւիդենտը) 50 ռ. ընդամենը 475 ռ.։

***

Խորհուրդը որոշեց Ընկ. գանձարկղում գտնուած յօգուտ պահեստի զինուորների ընտանիքների ժողովուած գումարից 3000 ռ. բաժանել չորս նահանգի ճիւղերի վարչութիւններին (Երևանի, Գանձակի, Թիֆլիսի և Կարսի) գործադրելու պահեստի զինուորների ընտանիքների դաշտային աշխատանքների համար։

***

Կ. Հ. Բ. Ընկ. ուսուցչ. ֆոնդի զեկուցման համաձայն, Խորհուրդը որոշել է տալ հետևեալ նպաստները մեր ծխ. դպրոցի ուսուցիչներին և նրանց ընտանիքներին. ա) Ուսուցիչ Խ. Բաբայեանի ընտանիքին միանուագ 100 ռ., բ) ուս. Լևոն Բաբայեանին միանուագ 200 ռ., գ) ուս. Կ. Տէրեանին ամսական 30 ռ. մինչև 1-ն յունուարի 1917 թ. բժշկուելու համար։

***

Ստացուած է շնորհակալութեամբ Բորիս Նիկոլայեվիչ Արղութեան Երկայնաբազուկից Սանահնի դպրոցական նպաստ 300 ռ.

***

Դ ե ր բ ե ն տ.—Ռէալական դպրոցի և իգական վարժարանի աւարտող սաներից և սանուհիներից—յօգուտ հայ փախստականների կազմած երեկոյթից գոյացած 106 ռ. 60 կ.։

***

«Համբաւաբերի» նախորդ № 24-ում յիշատակած Ցարիցինից—պ. Ս. Դոմբայեանից ստացուած 335 գումարը նուիրել են հետևեալ անձինք՝ եղբ. Օջախեաններ 100 ռ., Ա. Մ. 25 ռ., Ս. Դոմբայեան 25 ռ., եղբ. Արամեաններ 25 ռ., Ա. Սարգսեան 25 ռ., Ս. Պապանեան 27 ռ. 50 կ., Մ. Օջախեան 15 ռ., Զ. Ռոստոմով 15 ռ., Անյայտից 14 ռ. 50., կ., Բ. Սարգսեան 10 ռ., Կ. Կոստանեան, Ե. Մելիք-Ամիրզադ, Յ. Յովհաննիսեան, Օ. Օջախեան, Հ. Օջախեան, Ա. Ասլազուրով, Մ. Աղատով, Վ. Օվանէսով, Ա. Ղազարեան և Մ. ք. Գասպարեան 5-ական ռուբլի. Կ. Օջախեան 3 ռ.

***

## ՃԻՒՂԵՐ

Մ ե ծ Ղ ա ր ա ք լ ի ս ա.—Անցեալ 1915 թ. վարչութեան կազմը եղել է—նախագահ՝ բժ. Արմենակ Վարդանեան, գանձապահ՝ Լևոն Զոհրաբեան, քարտուղար՝ Սարգիս Յարութիւնեան և անդամներ՝ Աւետիս Աղաբաբեան և տիկ. Նատալիա Մուրադխանեան։ Մուտք ունեցել է 2049 ռ. 92 կ. և ծախք 610 ռ. 21 կ., առ 1-ն յունուարի 1916 թ. մնում է 1469 ռ. 71 կ. Ճիւղը փախստականներին օգնելու և խնամելու գործում գաղթականական հենց սկզբնաւորութիւնից ամեն կերպ աշխատել է թեթևացնելու նրանց վիճակը թէ դրամ և թէ հագուստ և սնունդ մատակարարելով նրանց։ Նիւթական միջոցները ստացել է Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդից և Հ. Կոմիտէից։ Կենտրոնից ստացել է այդ առթիւ 1700 ռ. և 2 վագոն հագուստ և նիւթեր վերմակներ կարելու։ Կենտրոնի առաջարկութեամբ փախստականների համար հրաւիրուած է 1 բժիշկ և 2 փելդշեր։ Վարչութիւնը տեղումը և շրջանում բացել է գաղթականական 5 դպրոց, որոնք ունէին 6 ուսուցիչ և 306 աշակերտ-աշակերտուհի։

***

Վ լ ա դ ի կ ա ւ կ ա զ.—Վարչութեան կազմը—1915 թ. նախագահ՝ Դաւիթ Նոնեան, գանձապահ՝ Յարութիւն Գէորգեան, քար-

տուղար՝ Կոստանդին Մարտիրոսեան, անդամներ՝ տիկին Եղիսաբեթ Կարախանեան, տ. Եղիսաբեթ Մամուլեան և Հայկ Բունիաթեան։ Հաշուետարուայ ընթացքում վարչութիւնը ունեցել է 20 նիստ։ Փախստականներին օգնելու համար կազմակերպել «Աւետիս» և գրօսանք, որոնցից ստացել է 3222 ռ. 36 կ.։ 1915 թ. ճիւղը ունեցել է մուտք 6005 ռ. 54 կ., ծախք 5511 ռ. 26 կ., մնացորդ առ 1-ն յուն. 1916 թ. 494 ռ. 28 կ.-

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### Հ. ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ։

Նոր-Բայազէտից—Ռուբէն վարդապետից.

Գնում եմ Դարաչիչագ. խնդրեմ բոլոր գործերը յանձնել Գէորգ Ալթունեանին, որը Էջմիածնի Եղբայրական Օգնութեան գաւառիս լիազօրն է։

—

Նոր-Բայազէտից—Տեղական ճիւղի վարչութիւնից.

Ինչպէս հեռագրուած էր, Հին-Նախիջևանի որբանոցը իր բոլոր կահաւորութեամբ կարող ենք ընդունել։ Հիմնուում է որբանոց հարիւր որբի համար։

—

Կաղզուանից—Տէր-Ներսէսից.

Փախստականները գալիս են խմբերով։ Միջոցներ չունենք. փոխադրեցէք դրամ։

—

Ախալքալաք—Շահպարոնեանից.

Ախալքալաքի Բար. Ընկ. ճիւղի վարչութիւնը համաձայն է. ուղարկեցէք որբերը։

—

Պետրոգրադ—Պապաջանեանից.

Միլիւտինը հեռագրել է գեներալ Թամամշեանին՝ տալ Մեսրոպ եպիսկոպոսին որբանոցների Պետական նպաստը 250,090 ռ.։

## Քրոնիկոն

Նորին Վեհափառութիւն Ամենայն Հայոց Կաթողիկոսը ամսիս 26-ին ժամանում է Թիֆլիս։

***

Մի քանի անձինք դիմել են Թիֆլիսի նահանգապետին և խնդրել թոյլ տալ սպառողների ընկերութիւն կազմել Բորչալուի գաւառի Ուզունլար գիւղում

***

Գանձակի նահանգի պետական դպրոցների վերատեսչի կարգադրութեամբ, այս ամառ Գանձակում և Շուշում ուսուցիչների համար բացուելու են դասընթացքներ հետևեալ ծրագրով՝ մանկավարժութիւն, երաժշտութիւն, մարմնամարզութիւն և ձեռնարուեստ։

***

Յունիսի 30-ին կսկսուի երթևեկութիւնը Սոլոլակի թունէլի։ Դուման որոշել էր վարձ վերցնել երթևեկողներից, իսկ քաղաքային վարչութիւնը որոշել է միջնորդել դումայի առաջ, որպէսզի երթևեկութեան համար վճար չառնուի։

***

Բագւում Տ. Յովհաննջանեանը խնդրել է իշխանութիւնից, որ իրեն իրաւունք տրուի հրատարակելու հայերէն երկու լրագիր՝ «Մի օր» և «Երկիր» անուններով, որոնցից առաջինը լոյս է տեսնելու երկուշաբթի և տօներին

***

Հայկ. Կենտրոնական Կոմիտէն որոշել է ամառուայ ընթացքում էլ դասաւանդութիւնը շարունակել գաղթականական դպրոցներում՝ յատուկ ծրագրով։

***

Լոնդոնում տեղի է ունեցել հայկական մեծ ժողով Շէքսպիրի մահուան 300-ամեակի առթիւ։

***

Բորժոմում և Վլադիկաւկազում տարրական դպրոցների ուսուցիչների համար վեցշաբթուայ գիւղատնտեսական դասընթացներ բանալու նպատակով՝ երկրագործութեան նախարարութիւնը Կովկ. ուսումնարան շրջանի հոգաբարձու Ռուդոլֆի տրամադրութեան տակ է դրել 10,000 ռուբլի։ Դասընթացների ունկնդիրների թիւը հասնելու է մինչև 600-ի։

***

Գ. Բարայեանի ձեռներէցութեամբ Դիադինում բացուած է ռուս-հայկական դպրոց։

Կովկասեան զինուորական շրջանի գլխաւոր կառավարիչ Վոլսկու առաջարկութեամբ, Քաղաքների Միութեան Կովկ. բաժանմունքի լիազօր Ալ. Խատիսեանը Միութեան ծառայողների համար սահմանել է շաբաթական 2 օր նուակատիք։

***

Տիկ. Եղ. Մելիք-Բէգլարեանը իր որդի՝ Դաւիթ բէգի յիշատակին 55,000 ռ. է նուիրել Գանձակի Ս. Յովհաննէս եկեղ. դպրոցի շէնքի և 80,000 ռ. նոյն դպրոցի գոյութիւնը պահպանելու համար։

***

Նորին Կայսերական Մեծութեան Կովկասի Փոխարքան թոյլատրել է Մայկոպում բանալու ուսուցիչների, իսկ Բագւում՝ ուսուցչուհիների դպրանոց։

***

Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը քաղաքի կենտրոնում նորից բաց է անում կենսամթերքների երեք խանութ։

***

Մի խումբ երիտասարդների առաջարկութեամբ Թիֆլիսի քաղաքագլխի փոխանորդի ընտրութիւնը յետաձգուած է առաջիկայ աշնանը։

***

Գորիսում բացուած է Կովկ. Հայոց Բարեգ. Ընկերութեան տեղական ճիւղի գրադարան-ընթերցարանը։

***

Պետրոգրադի Միջազգային Առևտրական բանկը Թիֆլիսում իր բաժանմունքին կից բաց է անում քաղաքային երկու գրասենեակ։

***

Ռիգէում Քաղաքների Միութիւնը հասարակութեան համար բաց է անում հիւանդանոց 100 մահճակալով։

***

«Մշակը» իր № 126-ում, յունիսի 9-ին, յայտնելով, որ „Тифл. Листокъ“-ում տպագրւում է պ. Ա. Բաբեանի հետաքրքրական տեղեկութիւնները Տրապիզոնի և շրջակայքի հայերի կոտորածի մասին, իբրև մի «նորութիւն ամենքի համար» առաջ է բերում «Տրապիզոնում հրատարակուող Թուրքաց «Մեշվերէթ» թերթում, 1915 թուականի յունիսի 15-ին, տպուած... «պաշտօ-

նական առաջարկութիւն» վերնագրով» յօդուածը։ Ճիշտ այս միննոյն «պաշտօնական յայտարարութիւնը», հետը և մի այլ գրութիւն՝ տպագրուած «Մեշվերէթ» թերթում «Ռուսական վայրագութիւններ» վերնագրով և Կարմիր դրօշակի «ընկերներէն» ստորագրութեամբ, ուղիղ մի ամիս առաջ տպագրուած է Համբաւաբերի № 19-ում «Երկու վաւերագիր տաճկահայոց կոտորածների» ընդհանուր վերնագրի տակ, որ հաղորդել էր խմբագրութեանս, ինչպէս խմբագրական ծանօթութիւնից էլ երևում է, թերթիս աշխատակից Արժանապատիւ Տէր-Մեսրոպը աւագ քահ. Մելեանը, որ Բագուից Տրապիզոն էր գնացել փախստականների օգնութեան գործով։

***

Պետրոգրադի Հայոց ընկերութեան լիազօր պ. Սիրական Տիգրանեանը եկել է Թիֆլիս՝ գնելու Վանում բացուելիք արհեստանոցի պարագաներ և գիւղատնտեսական գործիքներ գիւղացիների համար։ Հայոց այդ ընկերութիւնը ունի Սալմաստում մի բժշկա-սննդատու կայան, որ պահւում է Նորին Կայսերական Մեծութեան Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի յանձնաժողովի միջոցներով։

***

Նորին Վեհափառութեան Կաթողիկոսի դիւանատունը հեռագրով յայտնել է Մեսրոպ եպիսկոպոսին, որ Նորին Վեհափառութիւնը ամսոյս 25-ին ճանապարհուելու է Էջմիածնից, 26-ին ժամանելու է Թիֆլիս, որտեղ մտադիր է մնալ մի ամիս կամ ամիս ու կէս։

***

Հ. կենտ. Կոմիտէի ուսուցչական ենթակոմիտէն քննելով գաղթականական դպրոցների ամառուայ պարապմունքների հարցը, անհնարին է գտել շարունակել պարապմունքները և առաջարկել է Կենտրոնական Կոմիտէին՝ արձակել ամառս գաղթականական դպրոցները։ Առաջարկն ընդունուած է։

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ՍՊԻՐԻ ՀԱՅՈՑ ԶԱՐԴԵՐԻՑ

Օրերս Թիֆլիս եկան կոտորածից ազատուած մի քանի հայ ընտանիքներ։ Նրանք Իսպիրի շրջանից էին—մայր, աղջիկ և մի փոքրիկ երեխայ. երկրորդ ընտանիքը դարձեալ մայր ու աղջիկ, յետոյ 8—12 տարեկան մի քանի աղջիկ և երկու տղայ—ահա ինչ է մնացել Սպիրի շրջանի հայ բնակչութիւնից։

Իմ հարցին, թէ ինչ հրաշքով են ազատուել կոտորածից, ջահահաս կինը աչքերը յառեց յատակին, ամօթի գոյնը պատեց երեսը։ Հարցրի մի ուրիշ հասակաւոր կնոջից։ Նա հառաչանքով շարժեց գլուխը, հայեացքը դարձրեց իր գունատ աղջկայ վրայ և ասաց.

«Ահա հրաշքը, որով ազատուեցի ես»։ Եւ նա պատմեց թէ ինչպէս թուրքերը հաւաքեցին իրենց գիւղի հայ բնակչութիւնը ու քշեցին լեռները։ Մի ձորակի մէջ բաժանեցին կանանց և աղջկերանց տղամարդկանցից և քշեցին տարբեր ճանապարհներով։ Քիչ յետոյ լսելի եղաւ հրացանների զարկ։ Մեր շարքերում բարձրացաւ մի սարսափելի լաց ու կոծ. Թուրքերը սկսեցին մտրակի տարափը թափել մեզ վրայ, չթողնելով, որ նոյն իսկ ողբանք մեր սիրելիների մահը։

Մեզ տանում էին գիւղից գիւղ, աւանից աւան և բաժանում էին ցանկացողներին։

Քարուանը իջնելուց գիշերները կատարում էին դժոխային խրախճանք, կատարում էին մեզ վրայ աներևակայելի պղծութիւն. աղջկան—մօր առաջ, և մօրը—աղջկայ առաջ բռնաբարում։ Ինձ բաժանեցին աղջկանիցս, ամուսնացրին մի թուրքի հետ, չնայած իմ տարիքաւոր հասակիս։ Աղջկաս տուին մի թուրք ժանդարմի (զինւորի), յետոյ էլ մի ուրիշին՝ ծախելով մի քանի ոսկով։ Աղջիկս պահանջում է որ նրան տանեն մօր մօտ, բայց ստանալով մերժում, անձնասպանութեան փորձեր է անում։

Ինձ քաղցած պահում էին գոմում, ծեծում էին, չարչարում որ ես ընդունեմ մահմեդականութիւն։ Այդ միջոցին գայմագամից մի ժանդարմ զինուոր է գալիս, ինձ տեղափոխում է աղջկաս մօտ. և այնուհետև չարատանջ կինը պատմում է երկար ամիսներ տըխուր կեանքը, թէ ինչպէս պատահում էին ճանապարհներին հայ կանանց և աղջկերանց գերիների շարքեր, նոյն կամ աւելի զարհուրելի պայմաններում։ Գերիների մէջ կային այնպիսի հայուհիներ, որոնք խաչ էին կրում կրծքերին։ Թուրքերը հանում էին նրանց խաչը, դնում էին գետնին և մտրակի հարուածներով պահանջում հայերից՝ կոխկրտել խաչը, ասելով, որ դեռ բաւական չէ թուրքանալ, այլ պէտք է նաև հայութիւնից ձեռք քաշել։

Նոյն վիճակին են ենթարկուել հետևեալ գիւղերը.

Հունուտ, Զնաչուր, Սանաձոր, Օձոտ, Կասարա, Շահաթատան և ուրիշ շատ հայաբնակ գիւղեր, որոնցից յայտնի չէ, թէ ազատուողներ եղե՞լ են։

Մի ուրիշ կին պատմեց, թէ թուրքերը չէին սպասում ռուսների գալուն և ասում էին, որ հայերին ամեն տեղ վերջ են տուել, Ռուսաստանի հայերին էլ ռուսներն են կոտորել։ Յետոյ ասում են, որ մէկ օր յանկարծ գիւղը լցուեց կոզակներով։ Նրանք, որոնք սպասել էին ռուսների գալը և հաւատացել էին, տարել էին իրենց հայ գերիներին և քաշուել լեռները։ Նուաճած գիւղերի թուրք հասարակութիւնը մեծ պատկառանքով էին ընդունում ռուս սպաներին։ Սարքում էին խնճոյքներ հայերից թալանած կարողութիւնով, մորթոտում էին եզներ, ոչխարներ, բացում էին նրանց առաջ հայերից թալանած հացի շտեմարանները։ Եւ ռուսները գովում էին թուրքերի հիւրասիրութիւնը ու բարեհոգութիւնը, հաւատում էին նրանց ստախօսութիւններին։ Ձեռք բերելով ռուսների սիրալիր վերաբերմունքը, թուրքերը սպառնում էին իրենց մօտ ապաստանած հայերին, ասելով, թէ ռուսները բարեկամացել են թուրք ազգաբնակութեան հետ և հայերի գանգատներին ուշք չեն դարձնելու, իսկ ռուսների հեռանալուց յետոյ նրանք պատժելու են գանգատուող հայերին։ Երբ հայերը օգնութիւն էին խնդրում ռուս իշխանաւորներից, որ վերջիններս նրանց նորից հայեր դարձնեն և ազատեն գերութիւնից, գիւղի ամբողջ իսլամ հասարակութիւնը սուտ վկայութիւն էր տալիս, թէ այդ հայերը իրենք են կամաւոր թուրքացել, կանայք իրենց կամքով ամուսնացել են թուրքերի հետ, իսկ այժմ ուզում են հայանալ, որ ռուսների աչքում աւելի լաւ երևան։ Շատ տեղեր ռուսները հաւատում էին այդ բոլորին, բայց և այնպէս ազատում էին այդպիսի գերիներին։

Մի ուրիշը պատմում է, որ այնտեղ, որտեղ որ նա էր պահւում, երբ գիւղը ռուսների ձեռքը ընկաւ, թուրքերը կրծքերին խաչեր կախեցին ձևացնելով իրենց հայեր, որպէս զի իրանց գործած սխրագործութիւնների պատժից ազատուեն։ Այդտեղ հասնող զօրախումբը բաղկացած էր ռուսներից, որոնք չկարողացան հասկանալ այդ խարդախութիւնը։ Քիւրդերից ու թուրքերից յետ առան հայերի կայքը, նորից բաժանուեց այն մահմեդականներին, որոնք խաչեր էին կրում կրծքերին։ Այնքան բախդախնդիր մարդ են շահագործել ռուսների դիւրահաւատութիւնն ու անգիտութիւնը։

Զարհուրելի գոյներով են նկարագրում հայ տղայ-մանուկների վիճակը։ Աղջիկ-մանուկներին պսակում են 4 տարեկանից սկսած, կամ չարչարանքով սպանում են, կամ պսակում, իսկ

սրու սերունդը շատ տեղեր սրի են քաշել անխնայ, շատերին քշել են Թիւրքիայի խորքը և վաճառել իբրև գերիներ։

Պատմում են, որ Թուրքական բոլոր գիւղերում տեսել են հայ կիններ և երեխաներ. կարելի է նրանց հաւաքել, եթէ տեղի զինուորական իշխանութիւնը կազմակերպի հետախոյզ խմբեր տեղին ծանօթ հայերի ղեկավարութեամբ։

Բայց ապարախտաբար, ինչպէս երևում է, հայ գերիներին հաւաքելու գործը դրուած է յետադայ շարքում և կատարւում է ոչ ինքնորոյն կերպով, անմիջապէս, այլ ի միջի այլոց։

Գ. Օ.

---

## ԲԻԹԼԻՍԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԹՐՔԱԿԱՆ ԳԱԶԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ *)

### Բ

Զօրահանութեան քսանհրորդ օրը, երբ հրատարակուեցաւ թրքական անկախութիւնը սահմանադրութիւններու (կապիտուլացիաններին) վերացմամբ՝ մէջտեղ դրուեց հայերին զինաթափ անելու հարցը։ Զգեստւած կերպով զինաթափ էին անում հայ զինուորներին և նրանցից կազմում ամալիայ-թաբուրները (բանուոր խումբ)։ Հենց այդ օրերից սկսուեցին հայերի հանդէպ սիստեմատիկ հալածանքները. սկսած Բիթլիսի արուարձաններից մինչև Խնձորկին գիւղը և Վանի շրջանում ճանապարհի վրայ ընկնող հայկական գիւղերը մինչև սահմանը կողոպուտի ու աւերածութեան ենթարկեցին թրքական բարքերին յատուկ գազանութիւններով։

Եկան ուրիշները այլ ճանապարհով... գազանութեանց ուրիշ նոր գիւտերով աւերածութիւնների ենթարկեցին իրենց ճանապարհի վրայ ընկնող հայկական չէն գիւղերը մինչև Էրզրումի ռազմաբեմը։ Դատուանի ծեծ ու փէտը, Կծուակի կողոպուտն ու բռնաբարութիւնները, Ծղակի ու Թեղուտի մարդասպանութիւնները, Զրհորի ու Շամիրամի նոյնպէս թալանները և դեռ ինչքան հայ գիւղերի նմանօրինակ արկածների ենթարկուելը կանոնաւոր զօրքի սպաների, բժիշկների և զօրքերի ձեռքով, «համամարդկութեան հերոս» խտրհտառական շէֆերի «արդարասէր» խղճի առաջ։

Խտրհտառական մոքերը դեռ ինչ գազանութիւններ չպիտի ծնէին հայ՝ նոյնիսկ կանոնաւոր զօրքին կամաց-կամաց զինաթափ անելու հակադրութեամբ, Թուրք ու քիւրդ ժողովուրդը 15-70 տարեկանները զինեցին «միլլի»(կամաւոր)անուան տակ։ Բիթլիսի հայերն էլ իրենց քաղաքական ժողովով և դաշնակցութեան տեղական ներկայացուցիչներ՝ պ. պ. Արմենակ Յոխիկեանի (Սլաք) և Շամիրամցի Սողոյի միահամուռ դիմումով խնդրեցին միլլի գրուելու, բայց կառավարութիւնից մերժուեցին չարաչար ու վիրաւորելու չափ կոպիտ պատասխանով։

Ռուս-թրքական պատերազմի հրատարակուելու նախօրեակին, երբ Թուրք կառավարութիւնը յայտարարեց ջիհատ (համամահմեդական սրբազան պատերազմ), այդ ջիհատով ազատութիւն ջնորհուեց հազարաւոր ոճիրներ գործող աւազակապետներին, և նրանցից կազմուեցին չէտայական խմբեր։ Մի քանի օրուայ ընթացքում հրապարակներ լեցուեցաւ տխրահռչակ Բշարէ Զաթօներով, Մահմեդ Էմիններով, շէյխ սէիդ Ալու յաջորդներով և մարդակեր մոլլաներով։ Սկսուեց ջիհատի խսկական եռ ու զեռ՝ ջամիներում, մզկիթներում, հրապարակներում, պաշտօնատներում և փողոցներումն ու անկիւններումը ջիհատի համար անձնուիրութիւն պրոպագանդող շաղսիներ (երգով, սրինգով, թմբուկով մահմեդական տաղեր)։

Ատելութիւնը աւելի լայն ծաւալ ստացաւ և դէպի դրացի խտրհստի շնական (ցինիկ) միտումը (տենդենցը) իւր բաղձանքի գ ագաթնակէտին հասաւ և սիստեմատիկ կոտորածները ծայրայեղ կ բալարանք ստացան։

Ամբողջ տղամարդիկ ամալիա թաբուրի մէջ չարաչար աշխատեցնելով՝ բաւի խսկական սատմով մեռցնելուց և եղած-չեղածը բռնագրաւելուց զատ՝ դարաւոր սրբութիւններն էլ սրբապղծեցին։ Բիթլիսի բոլոր եկեղեցիներն ու վանքերը հիւանդանոցի, զօրանոցի, ախոռի և ամբարի վերածուեցին։

Այդ նորակազմ չէտաները կառավարութեան թելադրութեամբ և Դատուանի միւտիրի (վիճակապետ) ղեկավարութեամբ դեկտեմբերի 15-ին մտան Ուրտափ հայ-գիւղը, որը կողոպտելուց, կիներ, կոյս աղջիկներ և ի միջի այլոց երկու փոքր տղայ առևանգելուց յետոյ, 200 ոսկի կաշառքով դուրս եկան։ Երրորդ օրը նորից վերադարձան ու խարդախութեամբ ձերբակալեցին Դաշնակցութեան հին զինուոր Փ ա լ ա պ ի խ Կարապետին իւր ընկեր Թովմասի հետ մէկտեղ։

Կառավարութեան հրամանով Բիթլիսից գնացող չէտաները յունուարի 2-ին վառեցին Կօճկան գաւառի Եղիգիս, Բէլու և Նանիկանց հայ գիւղերը։

Յունուարի 4-ին Բիթլիսի հրապարակի վրայ կախուեցին Սասունցի վեց անմեղ երիտասարդ, երկու ոստիկանների քիւրդ յայտնի փախստականներից խփուելու պատճառով։ Քիւրդերը մեղաւոր չէին, որ խփել էին ոստիկանին, իսկ հայերը մեղաւոր համարուեցան, որ երկու օրից յետոյ լսել և տեղեկացրել էին կառավարութեան։

Յունուարի 27-ին կառավարութեան հրամանով այրուեցին Կարկառ գաւառի տասը հայաբնակ գիւղերը և տղամարդկանց կոտորեցին, պատրուակելով թէ զինուորութիւնից փախչողներ կան։

Դարձեալ յունուարի մէջ տխրահռչակ աւազակապետ Բշարէ Զաթօն իւր ասպատակող խմբով մտաւ Վանի շրջանի Բերկրի գաւառի Գործոթ գիւղը, ուր սովորական բռնաբարութիւններից ու գիւղը կողոպտելուց յետոյ՝ մարդասպանութեան չըդիմելու համար 300 ոսկուց աւելի տուգանք առնելով դուրս եկաւ, սակայն պատերազմում ռուսական մի չընաղ գնդակից իւր արժանի պատիժը գտաւ։

Սորա հօրեղբօր որդին՝ չնաշխարհիկ գազան Զաթոյի վրէժը լուծելու համար՝ Սղերդից մեծ փառքով ուղևորուեց դիրքերը, սակայն ոխը խեղճ հայերից հանեց և Ալջաւազի՝ Հառէն, Կոճէրէ և Կողէլ հայ գիւղերը սուրի և հուրի մատնեց։ Վանից աղէտը հանդարդեցնելու գնացող 200-ից աւելի միլլիները փոխանակ խեղճ, մորթոտուած հայերին պաշտպանելու, գազանութիւնների պակասը լրացրին կանանց ու երեխաներին եա կոտորելով։

Նոյն ժամանակներն էր որ Վանի մօտիկ Մխկներ գիւղը քարուքանդ արին։

Փետրուարին՝ Թուրք ժանդարմաներ (զինայր) զինուոր փնտռելու պատրուակով մտան Մշոյ դաշտի Ցրոնք 400 տուն ունեցող հայ գիւղը և քարուքանդ անելով ժողովրդին էլ կոտորեցին անխնայ։

Նոյնպէս Մշոյ դաշտը՝ Թուրք զինայրերը (ժանդարմաները), Աղջան գիւղի միւտիրի ղեկավարութեամբ, մտնում են Գոմս հայ գիւղը և գիւղի երևելիներից Կորիւնի տունն իջևանելով, ճաշ անելուց յետոյ. բռնի կերպով պահանջում են, որ իրենց հիւրընկալը իրենց համար գիւղի կիներից բերէ... Բայց Կորիւնը չտանելով այդ բոլոր անպատուութիւնը, միւտիրին մենակ դուրս է կանչում իբրև թէ գաղտնի գործով և դուռը դրսից գոցելով իր ծառաների օգնութեամբ իր տան չորս կողմը խոտ է լցնում ու վառում Թուրք զինայրների (ժանդարմաների) վրայ, իսկ միւտիրին ուղարկում է Մուշ՝ կառավարութեան յայտնելու զինայրների այդ սոսր արարմունքի մասին և ինքը խոյս տալիս։

Ձմեռուայ այդ ձիւն ու բուքին հայ տղամարդկանց տանջեցին և շատերին մեռցրին շալակած անտանելի բեռների տակ, սպա կարգը հասաւ կանանց։

Հայ կինը երեխան գրկին, 2 պուդ զինուորական պաշար շալակն առած, մորմոք-մորմոք լալիս ու երեխան օրօրելիս Բիթլիսից մինչև Մուշ և Կոփ էր երթևեկում, ձիւների միջով 50—60

*) Տես «Համբաւաբեր» № 24։

վերստ ճանապարհ կտրելով։ Մի՞թէ եզական է Կամախ գիւղացի Սառէյ անունով հայ կնոջ աղէխարշ դէպքը, որ թաղելով Թահւայի բուք ու բորանի մէջ իւր աղիք գրկանոցը և թուրք սինլքոր ու տիկանի մտրակին տակ շարունակել ճանապարհը՝ Մուշ զինուորական պաշար հասցնելու։ Մի՞թէ հազար երանի չասէին նոյն Սառէյին այն 15 հայ կանայք, որոնք Նէմրութի սարալանջին մի ժայռի տակ կուչ եկած միմեանց վրայ խեղդամահ եղան բուք ու բորանին ու ազատուեցին անասելի ու անպատմելի տանջանքներից։ Դեռ քանիսը ինքնասպան եղան և դեռ քանիսը ինքզինքնին ծով ձգեցին։

Այս չարչարանքներով մէկտեղ հայերը կրկին մեծ զոհունակութեամբ ամեն ինչ, որ ունէին, տալիս էին կառավարութեան, Օրինակ՝ Ախլաթի շրջանում Շամիրամ հայ գիւղը, որ 40 տուն ունի, երեք ամսուայ ընթացքում կառավարութեան տուած է 60 լիրայ հիանէ (հանգանակութիւն), 200 ոչխար, 5 ձի, 40 էշ, 12 սայլ 48 եզով, 17 կաշի (եզներ մորթելով), 25 լիտր իւղ, 50 լիտր պանիր, 30 աման մէկ-մէկ փթանոց քամած մածուն, 3,000 հաւկիթ, 1200 չափ հացահատիկ, 5,000 լիտր յարդ, 600 լիտր առւոյտ, 400 չափ գարի, 75 բարդ վառելու փայտ (բարդը 30 խուրձ, իսկ խուրձը 5 պուտ), 2,000 զոյգ դառւկի (սահնակ) ոտք և կոտոշ (տները քանդելով), 40 թաղիք, 27 խսիր, 130 հատ ջուալ, 120 զոյգ գուլպայ, 120 զոյգ թաթպան (ձեռնոց), 60 մեծ գերան զօրանոցների կառուցման համար. բացի զինուորներին տուած կաշառքներից։

Ես որ բադալ (զինուորութեան տուրք, 43 լիրայ) տալով զերծ էի մնացել զինուորութիւնից, կառավարութեան կողմից բռնի կերպով ռէս (գիւղապետ) էի որոշուած, գիւղում մարդ չգտնուելու և «սրբազան» պատերազմին որևէ տեսակէտով օգտակար լինելու համար։ Երեք ամիս վերջ Դատուանի միւտիրը մեզ՝ գիւղական ռէսներիս հրաւիրեց Դատուանը և ստորագրել տուեց, որ մեր բոլոր տուածները նուիրեցինք փադիշահին (Սուլթանին)։ Մենք ոչ թէ միայն տուածը նուիրեցինք, այլ և կնքեցինք, որ մեր ամբողջ ունեցածը փադիշահինն է, թող նրա «հայրախնամ» հոգատարութիւնը լինի մեր պատուի և անձի անձեռնմխելիութեան վրայ։ Իսկ մեծ գիւղերն ու քաղաքները ինչ են տուել— այն էլ Աստուած գիտէ։

Զմեռուայ կէսին Ռուսների Դութաղից ետ նահանջելուն, Դութաղի ու Ալաշկերտի շրջանի մնացող ամբողջ հայերին մորթոտեցին ոչխարի նման։

Սարիղամիշի գծի վրայ պարտուելով, Էնուեր բէյը Հասան-Գալէի մօտ 3,067 հայ զինուորներ մի ժամուայ մէջ ջարդել տուեց։ Նոյն ժամանակից ամալիա-թաբուրները քիւրդերի ձեռքում որսորդներից պաշարուած թռչունների երամներ դարձան։ Էրզրումի շրջանում, Գոնտէ-ամին քրդական գիւղը շալակատար 17 հայեր իրար շարելով Մոսինի հրացանի ուժն են փորձել։ Մուշից, Բիթլիսից, Սղերդից և այլ կենտրոնական գաւառներից պաշար շալակած խեղճ հայերը Էրզրում էին գնում, բայց այլևս չէին վերադառնում։

Տ. Շահրազի

---

# Գեղարուեստ

## ԿԱՐԵԼԻ Է

—

Արտաշէս ու Տիգրան ծնած երկրից
Օր լինի որ էլի Տիգրաններ դուրս գան.
Դրախտ կոչուող վայրի հողից ու ջրից
Կարելի է ազնիւ իշխաններ դուրս գան։

Անհնար բան չկայ Աստուծու համար,
Քարից Աբրահամներ երբ հանէ արդար.
Գայ նոյնպէս ժամանակ, փոփոխուի աշխարհ,
Թզուկներու տեղակ տիտաններ դուրս գան։

Ջիւանի, կը ճարէ հայը սրտակից,
Կատանայ լաւ վիճակ, բարուոք, բարելից.
Արիւնով ներկուած հայի դաշտերից,
Յուսալի է, հսկայ Վարդաններ դուրս, գան։

† Ջիւանի.

---

## ՄԵՆՔ ԿԸ ՎԵՐԱԴԱՌՆԱՆՔ

(Պատմուածք)

Այրողներին եմ կանչում
Մեռածներին ողբ կարդում
Կայծակները խորտակում։
Շիլլեր.

Ա.

Ազատ Կիլիկիան ճգնաժամի մէջ էր...

Բարձրաբերձ Սև լեռների մէջ, ուր ամպերը քնում են լեռների կուսական կատարներին և կորչում երկնքի անհունութեան մէջ, ապաստանուած էին մօտ հինգ հազար հոգի հայեր՝ մեծ ու փոքր, կին թէ մարդ և սրտատրոփ սպասում էին իրենց վախճանին։

Մի բուռն կտրիճներ՝ Պետրոս և Եսայի հայդուկների առաջնորդութեամբ պաշտպանում էին հազարաւոր թուրք օրդաներից, որոնք երեք կողմից շրջապատելով սպառնում էին ժամ առ ժամ յօշոտելու թշուառ հայերին։ Չորրորդ կողմից ծովն էր շրջափակել իւր անհատակ վիհով ու կապել հայերի ճանապարհը։

Երեկոյ էր։

Արևի վերջին ճառագայթները արդէն հանգել էին Սև լեռների կուսական ճակատներից և գոռ թշնամու հրացանների ճայթոցները դադարել։ Լսւում էին միայն նրանց հատ ու կտոր որոտների ձայները և երբեմն-երբեմն նրանց ահաւոր ոռնոցը, որը տարածուելով շրջակայ լեռներից, սարսուռով էր լցնում թշուառ և անպաշտպան հայերի սրտերը։

Բայց հայ հայդուկները սեպացած լեռ ժայռերին կրծքները դէմ տուած, ինչպէս մի մի մարմնացած արձաններ, դիրքեր էին բռնել ու մոլեգին հայեացքներով թուրքերի շարժողութիւնն էին դիտում և նրանց արգելում մօտենալ դիրքերին։ Վա՜յ էր այն թուրքին, որը կը յանդգնէր առաջ գալ դէպի դիրքերը. հայ հայդուկի գնդակը չէր վրիպի և նրան դիաթաւալ վայր կ'գլորէր,

Թուրքերը այդ տեսնում էին, զգում ու չ'համարձակելով մօտենալ դիրքերին, հեռուից գնդակների տարափ էին տեղում և ահաւոր ոռնոց արձակելով պտտում հայերի շուրջը...

Բ.

Մռայլ խաւարն էր տիրել։

Սև լեռների սև ժայռերից մէկի վրայ՝ ինչպէս արձանացած ուրուական, կանգնած էր նա՝ ժողովրդի հարազատ զաւակը, հայդուկ Պետրոսը ու նայում էր հեռուն, դէպի իր ոտքերի տակ տարածուած լայնատարած ծովը։

Խաղաղ էր շուրջը. ոչ մի ձայն, ոչ մի շշուկ չէր լսւում. ծովն էր միայն տնքում, որը իւր աժդահայ զանգուածով ծանր ծանր շարժուելով, քսւում էր լեռ ժայռերին ու լռիկ-մնջիկ հեծեծում...

Ա՜խ, այդ հեծեծանքը արձագանգ էր գտնում Պետրոսի զգայուն հոգու մէջ ու նրան ձգում անծայր վշտի մէջ... Դառն մտածմունքների մէջ ընկղմուած, նա յենուած իւր հրացանի վրայ, շուրջն էր նայում, ուր ոչինչ չէր երևում, և նրա

գլխի մէջ, մինը միւսի ետևից, անցնում էին ծանր խոհերը և նրան ձգում անհուն վշտի և հոգեկան տանջանքի մէջ։

Իր հայրենակիցների ծանր վիճակը նրան անասելի ցաւ էր պատճառում, լերդ ու թոքը կտրատում ու սիրտը մաշում։ Նա տեսնում էր նրանց անելանելի վիճակը, զգում նրանց մօտալուտ, ահաւոր վախճանը ու սարսափից ծանր ծանր հեւում...

Կըկոտորուեն, բոլորը կըմորթոտուեն և նրանցից ոչ ոք, ոչ ոք չի ազատուի, մտածում էր նա ու անգիտակցօրէն անյոյս հայեացքը դէպի ծովը դարձնում։

Բայց ծովն էլ խորհրդաւոր տնքում էր ու նա էլ, կարծես երկունքով բռնուած, յուսակտուր հառաչում...

Ա՜խ, եթէ ունենայինք մի փոքր փամփուշտ, մտածում էր նա, թերևս կարող կը լինէինք պաշտպանուել մի քանի օր ևս... Իսկ յետո՞յ—կրկին մահ, մինչդեռ օգնութեան յոյս ոչ մի կողմից։ Մի քանի ժամ... միայն մի քանի ժամ կարող ենք պաշտպանուել մեր ունեցած փամփուշտներով. իսկ յետոյ կատաղի, օրհասական կռիւ մեր մատներով թուրքերի հրացանների ու սրերի դէմ. ճ... անագորո՜յն ճակատագիր, մինչև ե՞րբ դու պիտի հալածես մեր դժբախտ ազգին ու մինչև ե՞րբ նա պիտի դառնայ քաւութեան նոխազ... համարեա բարձր ձայնով կանչեց Պետրոսը և հեկեկանքը խեղդեց նրան և արցունքները հեղեղեցին նրա սևացած թուխ դէմքը...

Ա՜խ, գուցէ հնար լինէր ազատել երեխաներին և կանանց, բայց ինչպէս... Տէր, փրկիր նրանց, կանչեց նա յուսակտուր և աչքը դէպի արևելք դարձրեց, ուր երկինքը արդէն աղօտ, բայց թոյլ կերպով շառագունել էր։

Պետրոսը ցնցուեց։

Նա զգաց, որ արդէն բացւում է արշալոյսը։

Ո՛չ, արշալոյսը չէր բացւում, օրհասն էր մօտենում։

Շուտով կ՚լսուի թշնամու զոռ ձայնը, հրացանների որոտը և մի քանի ժամից յետոյ իրենցից չի մնայ և ոչ մէկը...

Յուսահատ նա մի ցնցում արեց և նրա մտքի մէջ անցաւ արիւնոտ ահեղ պատկերը։ Նա տեսաւ, թէ ինչպէս գազանացած թուրքերը յօշոտում են կանանց ու երեխաներին, կտրատում նրանց ստինքները, անպատւում, աչքերը հանում խոր կապիճներից ու կենդանի խարոյկներով զարդարում Սև լեռների ազատ կատարները...

Սոսկումից նա ցնցուեց ու քրտինքը կայլակ առ կայլակ դուրս ծորաց նրա մթագնած դէմքի վրայ ու նա ճիգ անելով հեռացնելու այդ սոսկումի տեսարանը, յուսահատ ձայնով կանչեց.

—Անցրու այս բաժակը անմեղ ժողովրդից, Տէր, և փրկիր նրան...

Բայց խաւարը հետզհետէ անցնում էր ու լոյսը կամաց կամաց բացւում։

Թուրքերի բանակում արդէն սկսւում էր շարժողութիւնը, մինչդեռ Պետրոսի ոտքերի տակ ծովն էր տնքում ու կամաց կամաց իր մէջքը ուռցնելով փրփրում ու յուզւում... Ի՞նչ էր ուզում ծովը, ահեղ, անկուշտ ծովը։

Ի՞նչու նա փրփրում և ալեկոծւում էր...

Պետրոսը ոչինչ չէր հասկանում։ Զայրոյթից նա ատամներն էր կրճտացնում ու ծովի հետզհետէ կատաղող ալիքները դիտում։ Նա կարծես զգում էր, որ ծովն էլ միացել էր թուրքի հետ իրենց դէմ ու գազազած ալիքներով պատրաստուել կուլ տալու թշուառ հայերին...

Գ.

Արշալոյսն արդէն բացուել էր։

Ծիրանի էր ներկուել արևելքը ու փունջ-փունջ ոսկէ շողերով զարդարել Սև լեռների հսկայ կատարները։

Հինգ հազար հոգի հայեր, կարծես ամեհի գազանից հալածուած, խմբուել էին Սև լեռների մի խորշում և մաշուած, յոգնած ու տանջալից դէմքերով սպասում էին իրենց օրհասին։ Նրանք արդէն գիտէին, որ մօտ է այդ զարհուրելի օրհասը, որ մերոնց փամփուշտները արդէն սպառուել էին, որ մերոնք այլ ևս հնար չունէին պաշտպանուելու, և ծանր, ահաւոր սարսափը պատել էր նրանց։

Յուսահատ և սոսկալի րոպէներ էին։

Մայրը ծիծ էր տալիս լալկան երեխային ու վերջին համբոյրը տալով արտասուքներով լուանում իր փամփլիկ մանկան սիրուն երեսը. ծերունին լուռ աղօթում էր ու մեռնելու պատրաստւում, իսկ կորիչ հայդուկը մռայլ դէմքով չանկռտում լեռ ժայռերը։

Նրանք արդէն տեսնում էին ոխակալ սև մահը, զգում նրա ներկայութիւնը, որը գաղտուկ սողալով ձորերից վեր էր բարձրանում և իր արիւնալից աչքերով նայելով իր զոհերին, դուրս ցցուած ատամներն էր կրճտացնում ու պտտուելով թշուառների գլխին, սոսկումով էր լցնում նրանց սրտերը...

Սոսկալի և զարհուրելի պատկեր էր այդ։

Հեռու լեռներից արդէն լսւում էր թուրքերի ոռնոցը։ Հայերը տեսնում էին, որ նրանք պատրաստւում էին արդէն գրոհ տալու, և դառնապէս լալիս էին։

Հայերի աչքերից արդէն կաթ կաթ թափւում էր ցաւատանջ սրտերի արցունքները և ողողում Կիլիկիայի ժպտուն լեռները։

Այդ արցունքներն ընկնում էին ծովի կապոյտ ջրերի մէջ։ Ծովը կլանում էր նրանց, զայրոյթից ուռչում, փքւում, իր ահեղ մարմնով գալարւում և կատաղի յորձանքներով զարկւում ժայռերին...

Այդ ժամանակ ժայռն էր խօսում, հեծկլտում ու մորմոքից կարծես արտասւում...

Այդ ահաւոր րոպէին էր ահա, երբ ժողովրդի մէջ երևաց Պետրոսը և թախծոտ բայց յուսատու դէմքով նրանց դիմեց.

—Մի վախնաք, իմ սիրելի մայրեր ու քոյրեր. մարդկային կեանքի մէջ պատահել են աւելի ծանր դէպքեր, երբ Նախախնամութիւնը կատարել է իր հրաշքը և ազատել նրանց ծանր պատուհասից։ Մենք դեռ մեռած չենք. Կիլիկիոյ ժայռի բեկորներից դեռ շատ թուրքի կեանքեր կըխլուին, մինչև որ նրանք մեզ կ՚հասնեն. բայց մինչև նրանց մեզ հասնելը, ո՞վ գիտէ, ինչ կարող է պատահել, ասում էր Պետրոսը և խրախուսելով յուսաբեկ հայերին ինքը դէպի ծովն էր նայում, որտեղից բացի ծանր, ահաւոր հեծեծանքը ոչինչ չէր լսւում, ոչինչ...

Բայց նրա հոգին ինչ-որ զգում էր, ինչ-որ գուշակում ու միշտ դէպի ծովը նայում։

Հենց այդ ժամանակ նորից լսուեց թուրքերի նոր թափով ուժեղ ոռնոցը և նրանց առաջին համազարկը։

Կռիւը սկսւում էր։ Պէտք էր շտապել դէպի դիրքերը, ու Պետրոսը դառնալով ամբոխին ասաց.

—Աղօթեցէք, սիրելի քոյրերս, աղօթքը կը թեթևացնէ ձեր վիշտը և Աստուած չի մատնիլ ձեզ թշնամու ձեռքը։ Չէ՞ որ մեր հայրապետներն ու նահապետներն էլ ծանր վարկեաններին միշտ աղօթքի էին դիմում։

Ամբոխը կարծես դորան էր սպասում։ Կարծես կախարդական ձեռքից դրդուած նա ծունկ չոքեց բաց երկնքի տակ և բազկատարած ձեռքերով սկսեց այն աղօթքը, որ շարունակ երգել են մեր նահապետները իրենց ծանր րոպէներում։

Արի Աստուած հարցն մերոց,
Որ ապաւէնդ ես նեղելոց.
Հաս օգնութիւն ծառայից քոց
Լեր օգնական ազգիս հայոց։

Յուզիչ էր ժողովրդական այդ աղերսը, ցնցող մինչև մարդու սրտի խորքերը։

Եւ ահա այդ խորհրդաւոր վայրկեանին, Պետրոսը յուզմունքից խեղդուած մի վարկեան միայն նայեց նրանց, ինքն էլ չո-

քից, համբուրեց իր հայրենիքի հողը և ապա կարծես մի գերբնական ուժից դրդուած վեր թռաւ ու սլացաւ դէպի դիրքերը, այնտեղ սիրտ ու հոգի ներշնչելու իր մի բուռն կտրիճներին։ Թուրքերի գնդակները կարկտի նման տեղում էին, սակայն մերոնք լուռ էին և ոչ մի պատասխան չէին տալիս։ Նրանք սպասում էին Թուրքերի գրոհին, որպէս զի վերջին փամփուշտներն արձակելով սկսեն ձեռնակռիւը։

Այդ րոպէներին էր, երբ Պետրոսն էլ ժայռի գլխին կանգնած մէկ Թուրքերին էր նայում մէկ ծովի ահեղ կոհակներին։

Յանկարծ նա ցնցուեց, երբ ահեղ կոհակների միջից մի քանի ծխի շերտեր նկատեց, որոնք երբեմն չքանում էին, երբեմն նկատելի դառնում։

—Նաւեր են, կանչեց նա սրտատրոփ, և այդ նաւերը կարծես դէպի մեզ են գալիս։ Ո՜, կը փրկուեն անպաշտպան երեխաներն ու կանայքը... Բայց արդեօք թշնամու նաւե՞ր են, թէ՞ դաշնակիցների։

Բայց փրփրուող ու շառաչող ծովի վրայ գալիս էին նաւերը մէկը միւսի ետևից և կարծես կախարդական, անյայտ ձեռքից մղուելով, մօտենում ցաւատանջ ափերին...

Այդ վարկեանին ձորերի միջից լսւում էր Թուրքերի ոռնոցը և հրացանների որոտի ձայները, որոնք միախառնուելով հայերի օրհներգի հետ՝ մի տեսակ կախարդական պատկեր էին ներկայացնում։

Պետրոսը յուզմունքից դողում էր։ Ծովի վրայ նաւերը մերթ կորչում էին, մերթ երևում և նա դեռ չէր կարողանում որոշել թէ ինչ նաւեր են նոքա։

Յանկարծ նա ուրախութեան մի ճիչ արձակեց և խելացնորի նման կանչեց.

—Տղե՛րք, նշաննե՛ր, նշաննե՛ր տուէք, օգնութիւնը մօտ է։

—Կեցցէ Ֆրանսիան։

Հայ հայդուկների սիրտը թունդ առաւ, երբ Ֆրանսիայի անունը լսեցին, ու նրանք օգնութեան նշաններ տալուց յետոյ կանչեցին.

—Կեցցէ՜ Ֆրանսիան...

Եւ այդ ձայնը թնդացրեց Կիլիկիոյ լեռները, մինչդեռ Ֆրանսիական նաւերը հասկանալով՝ թէ ինչ դրամա է կատարւում այդտեղ, կանգ առան և շարունակելով պատերազմական դիրքերով, մակոյկները ցած թողին ու քիչ յետոյ լսուեցին թնդանօթների որոտը...

—

Հայերն ազատուած էին...

Թնդանօթների ռումբերը ցաք ու ցրիւ արին Թուրքերին, որոնք ահաբեկուած ցրիւ եկան լեռների մէջ, իսկ մի մասն էլ կոտորուեց։

Ահեղ կոհակների հետ կռուելով Ֆրանսիական նաւաստիները մեծ անձնազոհութեամբ հինգ հազար հայերին իրենց նաւերի վրայ առան ու երեսները շուռ տալով չքացան ծովի ալիքների մէջ... Սակայն այդ նաւերից մի ձայն էր լսւում, ճեղքում գոռ ալիքները և անուշ ելևէջով հնչւում Կիլիկիոյ լեռների մէջ։ Այդ հայերն էին, որ ինչպէս մի մարդ դեռ գոռում էին.

—Մենք կ'վերադառնանք...

—Կեցցէ Ֆրանսիան...

Բ. Այվազեան.

# Գիտական-գրական

## ՀԱՅԵՐԷՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ *)

Պարզ ոտքերով չափերից, ինչպէս տեսանք, հայերէնում գործածական է եղել անապեստեան չափը՝ անխառն անապեստեան ոտքերով, կամ մի յամբի խառնուրդով և կամ յամբի ու անապեստի փոփոխակի յաջորդութեամբ։ Մեր ոտանաւորը շատ աղքատ և միակերպ կը լինէր, եթէ բաւականանար միայն դրանցով։ Բարեբախտաբար այդպէս չի եղել։ Մեր բանաստեղծները մեր բազմադարեան գրականութեան ընթացքում, ազդուելով ուրիշ ազգերից, գրել են բազմազան չափերով, և 10-րդ դարուց, դուցէ և աւելի վաղ, մեր լեզուի մէջ հաստատուել և այժմ նոյն իսկ ժողովրդին են անցել շատ տեսակ չափեր, որոնց հիմքն ընդհանրապէս կազմում է բ ա ր դ ո տ ք ը, որ սովորաբար կոչւում է ա ն դ ա մ։

Ինչպէ՞ս է կազմւում անդամը։—Երաժշտութեան մէջ պարզ տակտերը միանալով կազմում են մի բարձրագոյն կարգի ռիթմական միութիւն, իբրև բ ա ր դ և խ ա ռ ն տ ա կ տ ե ր։ Այս միացումը կատարւում է մի զօրեղ շեշտով։ Ինչպէս որ պարզ տակտի երկու տակտամասերը մի շեշտով միանալով՝ մի ամբողջութիւն կամ տակտ են առաջ բերում, նոյնպէս և իրար յաջորդող երկու առանձին տակտեր՝ առաջին տակտի համեմատաբար աւելի ուժեղ շեշտով միանալով՝ կազմում են մի նոր ռիթմական միութիւն, որի մէջ լսւում են բաղադրիչ տակտերից իւրաքանչիւրի շեշտերը, միայն ամեն առաջին տակտերի շեշտը զօրեղ, իսկ ամեն երկրորդ տակտերինը՝ թոյլ (տա՛՛տատա́ | տա՛՛տա տա́տա...)։ Դրանով երաժշտութեան մէջ ռիթմն աւելի բազմազան է դառնում։ Նման ձևով նաև տաղաչափութեան մէջ պարզ ոտքերը միանալով՝ առաջ են բերում մի բարձրագոյն կարգի ռիթմական միութիւն—բարդ ոտքը կամ անդամը։ Այստեղ ևս միացնողը սովորաբար երկու պարզ ոտքերից մէկի համեմատաբար աւելի զօրեղ շեշտն է. ինչպէս հետևեալ տողի մէջ (նշանակուած են միայն զօրեղ շեշտերը).

Էլ չէք ասում | , թէ պա՛րտք ունէք...

Այսպէս և ամեն ութվանկանի տողերի մէջ չորս պարզ ոտքերը երկ-երկու միանալով կազմում են երկու անդամ։ Երաժշտութեան մէջ բարդ տակտերի զօրեղ շեշտերը միշտ առաջին տակտերի սկզբում են լինում. ոտանաւորի մէջ, սակայն, այդ չի պահանջւում, մանաւանդ մեր ոտանաւորի մէջ, որի շեշտերը, լեզուի առանձնայատուկ շեշտադրութեան պատճառով, ընկնում են սովորաբար ոտքի երկրորդ մասի վրայ։ Բացի այդ՝ ոտանաւորի մէջ անհրաժեշտ չէ նաև, որ զօրեղ շեշտեր միշտ հաւասար ուժով լինեն և կանոնաւորապէս դասաւորուեն. այսինքն՝ պէտք չէ, որ իրար յաջորդող նոյն տեսակի անդամները շեշտի նկատմամբ բոլորովին նոյն կազմութիւնն ունենան։ Օրինակ՝ եթէ անդամները կազմուած են երկու յամբից և առաջին անդամի զօրեղ շեշտը երկրորդ յամբի վրայ է,—ինչպէս լինում է յաճախ մեր ոտանաւորի մէջ,—յաջորդ բոլոր անդամների մէջ ևս զօրեղ շեշտը միշտ երկրորդ յամբի վրայ չպէտք է լինի, ինչպէս որ է հետևեալ տողերի մէջ (նշանակուած են միայն զօրեղ շեշտերը).

Երբ սեաւ գիսա՛կն էր ճակատո՛ւն,
Ոսկունքն արա՛գ էր քանց այծո՛ւն...

Զօրեղ շեշտերի այսպիսի կանոնաւոր յաջորդութիւնը, ինչքան էլ երաժշտական տեսակէտից մի պահանջ է և ոտանաւորը աւելի երաժշտական է դարձնում, բայց և այնպէս միանման շարունակուելով՝ ձանձրալի միակերպութիւն է առաջ բերում։ Ուստի զօրեղ և թոյլ շեշտերի այդպիսի կանոնաւոր յաջորդութիւնը պահւում է սովորաբար միայն որոշ տեղերում, երբ պէտք է առանձին տպաւորութիւն առաջ բերել։ Կընշանակի, ոտանաւորի անդամը ծագելով նոյն հիմունքից, ինչ որ ունի երաժշտութեան մէջ բարդ ոտքը, կատարելապէս չի հետևում և չպիտի հետևի երաժշտութեան բարդ ոտքի կանոնին։ Եւ այս հասկանալի է. ոտանաւոր և երաժշտական երկ, նոյն արուեստի արդիւնք չեն։ Սովորաբար գեղեցիկ է լինում ոտանաւորը այն ժամանակ, երբ միատեսակութիւնը պահւում է բազմազանութեան մէջ։ Այս պատճառով բաւական է միայն, որ երկու պարզ ոտքեր միանան և մի անդամ կազմեն՝ այդ ոտքերից մէկն ու մէկի աւելի զօրեղ շեշտով.

*) Տես «Համբաւաբեր» № 23։

բայց ոչ անպատճառ այդ զօրեղ շեշտերի միակերպ դասաւորութեամբ։ Զօրեղ շեշտերի շարժուն դասաւորութիւնը նոյն իսկ ցանկալի էլ է ոտանաւորի համար, որովհետեւ դրանով աւելի մեծ կենդանութիւն է ստանում յօրինուածքը։

Ոտանաւորի անդամների այս կազմութեան շեղումը երաժշտական բարդ ոտքերի կազմութիւնից՝ կարծել չպիտի տայ, թէ դրանով թուլանում է ոտանաւորի անդամաւոր կազմութիւնը։ Չըպէտք է մոռանալ, որ ոտանաւորը երաժշտական երգ չէ եւ կազմւում է լեզուից—բառերից ու խօսքերից, եւ միշտ նկատի պիտի ունենայ ոչ միայն կանոնաւոր ռիթմական շեշտերն, այլ նաեւ բառերի բնական շեշտերն ու բառերի հետ կապուած միտքը։ Արդ երբ մի վերջաշեշտ քառավանկ բառ գործածւում է իբրեւ երկու յամբ, բնականաբար այդպիսի բառն առնւում է իբրեւ մի անդամ, կազմուած երկու յամբական ոտքերից, որոնցից առաջինն անշեշտ է, իսկ երկրորդը շեշտուած։ Այսպիսի մի տողի մէջ՝ Մատունք կուսին | ամենագեղ... վերջին քառավանկ բառը՝ ամենագեղ մի անդամ է կազմում. իսկ դրա դիմաց միւս երկու բառերը զգացւում են իբրեւ մի միութիւն։ Ուրիշ խօսքով՝ անդամի համար ոտանաւորն օգտւում է բազմավանկ բառերից, որոնք մի բառական միութիւն լինելով՝ ըստ ինքեան արդէն մի շեշտով մի ռիթմական միութիւն են կազմում։

Ապա՝ զօրեղ շեշտերի ազատ դասաւորութիւնը ոտանաւորի մէջ, առանց վնասելու ոտանաւորի անդամաւոր կազմութեանը, հնարաւոր է լինում եւ նրանով, որ որոշ բառեր իրենց քերականական, որ մի եւ նոյն է թէ տրամաբանական յարաբերութեամբ աւելի սերտ կապակցուած են լինում, ուստի եւ իրար աւելի մօտիկ են արտաբերւում։

Ամպի փէշով | մէկ հաւք անցաւ...

Այս խօսքի մէջ, օրինակ, ամպի փէշով բառերը քերականօրէն իրար հետ աւելի սերտ են կապակցուած, ինչպէս եւ մէկ հաւք անցաւ բառերն իրար հետ, քան փէշով մէկ հաւք միմեանց հետ։ Ուստի արտասանութեան ժամանակ բնականօրէն աւելի մօտեցնում ենք իրար մի կողմից՝ ամպի փէշով, միւս կողմից՝ մէկ հաւք անցաւ ոտքերը. որով եւ արտասանութեամբ արդէն առաջ է գալիս այս չորս յամբերի երկերկու միացումը իբրեւ երկու բարդ ոտքեր։ Բայց առանց բացատրութիւնների մէջ մտնելու՝ ասենք, որ, մեր քերականական շեշտերի դրութեան եւ մեր բառադասութեան պատճառով, բառերի այսպիսի կապակցութեան մէջ զօրեղ շեշտերը սովորաբար ընկնում են երկրորդ տակտերի վրայ. որով միաժամանակ եւ շեշտն է ազդում երկու ոտքի միանալուն՝ ի մի բարդ ոտք։

Այսպէս ուրեմն, երկու պարզ ոտքերը՝ մի ոտքի զօրեղ շեշտով կը միանան, թէ քերականական կապակցութեամբ, թէ մի բազմավանկ բառ կլինի եւ առնուած իբրեւ մի անդամ,—ոտանաւորի համար այդ միեւնոյն է։ Բաւական է, որ երկու ոտքերն զգացւում են միասին իբրեւ մի ռիթմական միութիւն։ Սակայն երբ անդամների մէջ պարզ ոտքերը մտքով սերտ կապակցուած չեն միմեանց հետ, այն ժամանակ ոչ միայն անհրաժեշտ է զօրեղ շեշտը, այլ եւ կարեւոր է զօրեղ շեշտերի կանոնաւոր դասաւորութիւնը կից անդամների մէջ։

Հընչո՛ւմ էր փրփրուն | վըտա՛կն ար՛ծաթի,
Արեւը խաղո՛ւմ | պայծառ կապոյտո՛ւմ...

Այս երկու տողից երկրորդի երկու անդամները քերականօրէն արդէն առանձին միութիւններ են կազմում. ուստի զօրեղ շեշտերի կանոնաւոր դասաւորութեան կարիք չկայ։ Առաջին տողի մէջ սակայն առաջին անդամի երկրորդ ոտքը՝ փըրփրուն մտքով հեռանում է առաջին ոտքից՝ հընչում էր եւ միանում է երկրորդ անդամի առաջին ոտքին՝ փրփրուն վտակն. ուստի հարկաւոր է զօրեղ շեշտերի կանոնաւոր դասաւորութիւն, որպէսզի երկու ռիթմական անդամների բաժանուի այդ տողը։

Մեր ոտանաւորի բարդ ոտքերը կամ անդամները բաւական բազմազան են։ Այստեղ կըդնենք միայն մի քանի սովորական սիրուած անդամների մասին։ Դրանցից առանձնապէս կարեւոր եւ շատ գործածական են քառավանկ եւ հինգվանկանի անդամները։

ա) Քառավանկ անդամները յամբական բարդ ոտքեր են, կազմուած երկու յամբերից կամ մի քառավանկ (կամ միավանկ եւ մի եռավանկ) բառից։ Զօրեղ շեշտը սովորաբար երկրորդ յամբի վրայ է. ուստի եւ չորրորդ վանկը անպայման պիտի շեշտուած լինի առանց որեւէ բացառութեան. որովհետեւ այդ շեշտով է միայն ոտանաւորն ստանում իր անդամաւոր կազմութիւնը։ Քառավանկ անդամներով ոտանաւորի տողը բնականաբար կարող է կազմուած լինել միայն 4. 8. 12, 16 վանկերից. որով ոտանաւորը լինում է՝ միանդամ, երկանդամ, եռանդամ եւ քառանդամ։

Դրանցից ամենից շատ սիրուած է 8-վանկանի երկանդամը։ Անպայման շեշտուած պիտի լինեն 4-րդ եւ 8-րդ վանկերը։ Ոտանաւորը սակայն աւելի երաժշտական է, երբ բացի այս երկու հիմնական շեշտերից՝ մի երրորդ շեշտ եւս կայ, միայն զոյգ վանկերից մէկի վրայ, կամ 2-րդ, կամ 6-րդ վանկի վրայ։ Չորրորդ շեշտը սակայն, որ նոյնպէս զոյգ վանկի վրայ պիտի դրուի, միշտ էլ անհրաժեշտ չէ.

Առաւօտուն | դռնակն է բաց,
Ել, ել, արե՛ղ | Հայաստանեա՛ց,
Ահա ելնեն | որք կան ի քո՛ւն,
Եւ Նահապետն | այլ որ անքո՛ւն,
Յաստուածազարմն | ելնէ հանդէս,
Հայ հայրենեաց | ելնէ ի տես։

Ալիշան

Այստեղ չենք կարող մանրամասն ուսումնասիրել այս, ինչպէս եւ միւս չափերի առանձնայատկութիւնները. այսքանը միայն ասենք, որ տողի սկզբում, երբեմն միաժամանակ նաեւ երկրորդ անդամի սկզբում, թոյլատրւում է շեշտերի տեղափոխութիւն զոյգ վանկերից կենտ վանկերի վրայ, բայց միայն որոշ տպաւորութիւն առաջ բերելու համար.

Բո՛յլ մը նայուածք | , փո՛ւնջ մը ժըպիտ,
Բուրա՛յ մը խօսք | գիւթեց իմ սիրտ...

Դուրեան

Այսպիսի տողերի մէջ ոտանաւորը մի րոպէ կորցնում է իր մաքուր յամբական բնաւորութիւնը, որովհետեւ անդամը կազմւում է ոչ թէ երկու յամբական ոտքերից, այլ մի քորիյամբական ոտքից։ Դրանով ոտանաւորի ռիթմը մի րոպէ բազմազանութիւն է ստանում, մինչեւ իսկոյն յաջորդ տողի մէջ վերականգնւում է սովորական ռիթմը։

12-վանկանի եռանդամը կազմւում է երեք քառավանկ անդամից (4+4+4), հիմնական շեշտերն ունենալով 4. 8. 12 վանկերի վրայ. իսկ 16-վանկանի քառանդամը՝ կազմւում է չորս քառավանկ անդամից, միջին ունենալով հատած (4+4 ‖ 4+4). հիմնական շեշտերն ունի 4. 8. 12. 16 վանկերի վրայ։ Այս ոտանաւորներն էլ սակայն երաժշտական են, երբ բացի հիմնական շեշտերից՝ ունին նաեւ երկու կամ երեք ուրիշ ռիթմական շեշտեր եւս, միայն ի հարկէ միշտ զոյգ վանկերի վրայ, ինչպէս պահանջում է յամբական ռիթմը։

Մեր հին բանաստեղծներն այս քառավանկ անդամներով կազմուած ոտանաւորները յաճախ ձեւափոխում են՝ սկզբի անդամը կազմելով երկու կամ երեք, նոյն իսկ մի վանկից։ Այս ձեւափոխութեամբ էլ սակայն ոտանաւորը միշտ պահում է իր յամբական բնաւորութիւնը, եւ դրանով միայն առանձին հրապոյրք է ստանում, յարմարուելով մտքին։ Երբ այս ձեւափոխութիւնը միակերպ պահւում է բոլոր տողերի մէջ, այն ժամանակ առաջ են գալիս նոր ձեւով ոտանաւորներ, դարձեալ շեշտերի կանոնաւոր դասաւորութեամբ (3+4. 3+4+4. 3+4 ‖ 4+4. կամ 2+4 ‖ 4+4.)։ Ինչպէս են, օրինակ, հետեւեալները.

Գըլո՛ւխք | լինին չատո՛ւց ||, անուն եղե՛լ | իր Էգթիա՛ր,
Կուրի՛ | առաջնորդէ || և ինք ալ կո՛ւր | ու խիստ խաւա՛ր…

Կոստանդին Երզնկացի.

Կամ հետևեալը, որի սկզբի անդամը եռավանկ է.

Զիմ գանգա՛ | տըս լսեցէք ||, յիմէ առէք | բան մի խըրատ
Իմ աղբա՛րն | էբէվլայթա՛յ || որ ինք չունի | խելք հաւա՛տ…

Կոստ. Երզնկացի

Այսպիսի ձևափոխութիւն մեր նոր բանաստեղծութեան մէջ շատ սիրուած է անել ոչ թէ սկզբի անդամի մէջ, այլ վերջին, այն է՝ վերջին անդամը փոխանակ կազմելու մի յամբական բարդ ոտքից՝ կազմում են մի անապեստից. որով առաջ են գալիս 7. 11. 15, այլ և 14-վանկանի ոտանաւորներ, հետևեալ սքեմաներով.

ա) 7=4+3=հիմն. շեշտերը 4 և 7 վանկերի վրայ.

բ) 11=4+4+3. հիմն. շեշտերը 4-8-11 վանկերի վրայ։

գ) 15=4+4+4+3. հիմն. շեշտերը 4. 8. 12 և 15 վանկերի վրայ։

դ) 14=4+3+4+3. հիմն. շեշտերը 4. 7. 11 և 14 վանկերի վրայ։

Բացի հիմնական շեշտերից, որ պէտք է լինին անպատճառ, բնականաբար լաւ է, որ լինին նաև ուրիշ ռիթմական շեշտեր առաջին երեք ձևերի մէջ 2. 6. 10. վանկերի վրայ, իսկ չորրորդ ձևի մէջ 2. 9. վանկերի վրայ։

Կուսա՛նք Հայոց | նոր շուշա՛ն
Տեսէք ի դա՛շտ | Շաւարշա՛ն…

Ալիշան

Ոչ փա՛ղ զարկինք | , ոչ արձագա՛նգ լեռնասո՛յղ
Սարէ ի սա՛ր՝ | չարաշըշո՛ւկ | տարին լո՛ւր…

Պէշիկթաշլեան

Քընէ, քընէ | , սիրուն որդի՛ ||, քու մօր սըրտին | լափո-փա՛նք.
Քեզ ո՛ր կասեմ | տըխո՛ւր ձէնո՛վ ||, օր օր, օրէր | ու շատ կեա՛նք…

Գամառ Քաթիպա

Ա՛յ իմ լուսնա՛կ | գեղեցի՛կ ||, աստուածավա՛ռ | դու լապտե՛ր,
Զօր առաջնո՛րդ | գիշերո՛յ || դըրա՛ւ յերկի՛նս | ինքըն Տէր…

Ալիշան

բ) Հինգվանկանի անդամները յամբանապեստեան բարդ ոտքեր են, կազմուած մի յամբից ու մի անապեստից։ Այս պարզ ոտքերը սակայն հաստատուն և անփոփոխ դրութեամբ չեն յաջորդում իրար, այլ ազատ, շարժուն դրութեամբ, իբրև 2+3 կամ 3+2. բացի այդ՝ քանի որ ոտանաւորը անդամաւոր կազմութիւն ունի, առաջին շեշտը կարող է և չլինել և ամբողջ անդամը կազմուած լինել մի միավանկ ու մի քառավանկ բառերից մի շեշտով, և նոյն իսկ մի հինգվանկանի բառից։ Հիմնական շեշտը հինգերորդ վանկի վրայ է և անպայման պիտի լինի առանց որևէ բացառութեան. այս թէ ոչ՝ ոտանաւորը հեշտութեամբ կը վերածուի արձակ խօսքի։ Որովհետև եթէ չկայ պարզ ոտքերի ռիթմը, քանի որ այդ ոտքերի դասաւորութիւնն ազատ է, և եթէ անդամի ռիթմն էլ չլինի՝ հինգերորդ վանկի անշեշտ մնալու պատճառով, այն ժամանակ յաճախ այլևս ոչ մի ընդհանուր ռիթմ չի կարող լինել տողերի մէջ։

Հինգվանկանի անդամներով կազմուած տողերը բնականաբար կարող են լինել 5. 10 և 15-վանկանի։ Դրանցից մեր աշխարհաբար բանաստեղծութեան մէջ առանձնապէս սիրուած է տասնվանկանի երկանդամ ոտանաւորը, որի 5-րդ և 10-րդ վանկերն անպայման շեշտուած պիտի լինեն։ Բայց ոտանաւորն աւելի ռիթմիկ է, երբ բացի հիմնական երկու շեշտերից կան նաև երկու ուրիշ շեշտեր 2-րդ կամ 3-րդ և 7-րդ կամ 8-րդ վանկերի վրայ հետևեալ չորս ձևերով՝ 2+3 | 2+3. 3+2 | 3+2. 2+3 | 3+2 3+2 | 2+3։ Այս ձևերից առաջին երկուսը բնականաբար աւելի ռիթմիկ են, քանի որ ոտանաւորի մէջ յամբ ու անապեստ կամ անապեստ ու յամբ կանոնաւոր դասաւորութեամբ յաջորդում են միմեանց։ Բանաստեղծները երբեմն նոյն իսկ, ռիթմական ոգուց առաջնորդուած, տան բոլոր տողերի մէջ ևս նոյն ոտքերի փոփոխական կանոնաւոր յաջորդութիւն են կազմում.

Կուզէի լինել | սիրահա՛ր սոխա՛կ
Եւ ձեռի՛դ գերի՛ | , վանդակո՛ւմ փակուա՛ծ.
Ականջի՛դ հընչե՛լ | հրաշալի՛ նըւա՛գ,
Մեղմ օրօր ասե՛լ | քո հոգո՛ւն զմայլուա՛ծ։

Յովհաննիսեան

Ինչքան էլ շեշտերի այսպիսի հաստատուն դասաւորութիւնը աւելի ռիթմիկ-երաժշտական է դարձնում ոտանաւորը և ցանկալի է մի երաժշտի համար, երբ նա եղանակ է դնում մի քնարերգութեան, բայց և այնպէս տաղաչափական տեսակէտից դա անհրաժեշտ չէ. որովհետև նոյն ոտքերը յարատև կրկնուելով առաջ են բերում միակերպութիւն, որ եթէ երգելիս զգալի չէ, կարդալու ժամանակ շատ զգալի է լինում, քանի որ մեր լեզուի մէջ պարզ ոտքերը մեծ մասամբ կազմւում են վերջաշեշտ բառերից, ինչպէս է, օրինակ, վերևի չորս տողի մէջ։ Ուստի բաւական է, եթէ հիմնական շեշտերը ամեն 5-րդ վանկերի վրայ հաստատուն պահելով՝ պահւում է նաև ոտանաւորի ընդհանուր ռիթմը, որ առաջանում է անդամներից։ Դրանով արդարև թուլանում է ռիթմիկ երաժշտականութիւնը, բայց ոտանաւորը, երկրորդական շեշտերի ազատ դասաւորութեամբ, բազմազան և ճըկուն է դառնում, ընդունակ յարմարուելու մտքի և զգացումների ամեն նրբութիւնների արտայայտութեանը։ Եւ անշուշտ այս յատկութիւնների շնորհիւ է, որ մեր այս ոտանաւորը շատ սիրուած է մեր նոր բանաստեղծներից, մանաւանդ այնպիսի բանաստեղծութիւնների համար, որ սահմանուած չեն երգուելու։ Մի կողմ թողնելով մեր այս ոտանաւորի յատկութիւնների մանրամասնութիւնները, ասենք միայն, որ եռանդամ 15 վանկանի ոտանաւորը սրանից տարբերւում է մի աւելի անդամով.

Էս բո՛ւնձը մէջո՛ւտ | սարի՛ գագաթա՛ն | բազմա՛ է նըստա՛ծ
Թէ էծը վայրի՛ | ջըլո՛ւ ոտներո՛վ | է այնտե՛ղ հասած…

Գամառ Քաթիպա,

Երբեմն 4 և 5-վանկանի խառն անդամներով է կազմւում տողը, իբրև 4+5. 4+4+5. կամ 5+4. 5+4+4։ Այսպիսի ոտանաւորն ստանում է յամբական բնաւորութիւն, միայն մի անապեստի խառնուրդով, քանի որ հինգվանկանի անդամը կարող է լինել թէ 2+3 և թէ 3+2. բանաստեղծներն այստեղ էլ սակայն, ռիթմական ոգուց առաջնորդուած, մի շարք տողերի մէջ անապեստեան ոտքը հաստատուն դրութեամբ են պահում։

Հանդարտ ու լո՛ւռ | է շո՛ւրջըս բոլո՛ր,
Երկի՛րս ի քո՛ւն | , երկինք լոկ արթո՛ւն.
Լուսնա՛կ, վառէ | զկանթեղըդ կըլո՛ր,
Ի գերեզմա՛նս | իմ հա՛րց հայկազո՛ւնս։

Ալիշան

դ) Վեցվանկանի անդամները մեր նոր բանաստեղծութեան մէջ քիչ են գործածւում, այն էլ՝ միացած հինգ վանկանի անդամների հետ իբրև 5+6 կամ 6+5։ Մեր հին բանաստեղծութեան մէջ 6-վանկանի անդամը, վերջից միշտ շեշտուած, ունի գրեթէ միշտ յամբական բնաւորութիւն. այսինքն շեշտերն ընկնում են միայն զոյգ վանկերի վրայ. որով 5+6 կամ 6+5 տողերըն ստանում են յամբական բնաւորութիւն, մի անապեստի խառնուրդով շարժուն դրութեամբ։

Կըռո՛ւնկ, ուստի՞ կուգա՛ս | , ծառա՛յ եմ ձայնի՛դ,
Կըռո՛ւնկ, մեր աշխարհէն | խաբրի՛կ մի չունի՞ս…
Քանի որ ա՛խ կանեմ | , կուքաղուի հոգիս…

Սեղան հոգևո՛ր | յերկնի՛ց իջեա՛լ հացի՛ն,
Թանձարան անո՛յշ | երկնավըրա՛կ աղբե՛րն

Ներսէս Շնորհալի.

վանքերն ու եկեղեցիները. Գոմաց վանք. Ամրդոլ, Առեխ, Խնդրակատար. քաղաքի մայր եկեղեցին է Կարմրակը։ Ամրդոլն ունէր կարեւոր ձեռագիր մատեաններու եւ եկեղեցական ոսկի եւ արծաթ սպասներու թանկարժէք հաւաքածոյ։

Ուշագրաւ է քաղաքի միջնաբերդը, որ Մեծ-Աղէքսանդրին են վերագրում, եթէ սակայն չը լինի խալդէական ժամանակի գործ։

Բիթլիսէն Տարոն երթալու համար դարձեալ պիտի անցնենք Թանւայէն եւ Գրգուռ լերան արեւմտեան կողմէն եւ դառնալով արեւմուտք կը հանդիպենք մի Խան-ի, որ կոչւում է Դխլանոս։ Իջնելով Զուխուր գաւառակը կը հանդիպենք Մեղրագետի հրաշալի ականակիտ ակունքին [1]), որ միակ տեղէ մը, իբրեւ աղբիւր բղխելով վազում է դէպի արեւելք եւ ապա դառնում արեւմուտք անցնելով Տարոնոյ գրեթէ ամբողջ երկայնքէն։

Մուշ երթալու համար աջ կողմի վրայ կը թողնենք Կեալաթաշ նշանաւոր ձորը, որու մուտքին վրայ գտնւում է համանուն գիւղը, ուր կայ շատ կարեւոր բեւեռագիր մի արձանագրութիւն, որ տակաւին անծանօթ է գիտական աշխարհին։

Տարոնոյ հարաւային կողմն է Սեւ սարը, երեւլի իր զարմանահրաշ բուսականութեամբ եւ պուրակներով. այնտեղ են Խոյթ, Բռնաշէն, Սասուն՝ իր Մարաթուկովն ու Անտոքովը. Ս. Աղբերիկ վանքը. Առաքելոց կամ Ղազարու մենաստանը՝ խնկելի Թարգմանիչներու գերեզմաններով. Ս. Յովհաննու վանքը, Աստղէն բերդը, Մուշեղաբերդը եւ վերջապէս Մատնավանքն ու Համբաւաւոր Ս. Կարապետը՝ Բարկեայ լերան եդեմական բարձունքներուն վրայ։ Բայց, աւա՜ղ, լքուած ու անտէրունչ «իբրեւ զհիւղս մրգապահաց...»։

Սահակ Մովսէսեան

Մեծ Ղարաքլիսա, 10 յունիսի 1916։

---

**Է. Սետոն Տոմսոնի** «Թեաւորը», յաւելուած Հասկեր ամսագրի. Թարգմ. Եփրեմ Սարգսեանի, գինն է 10 կոպ.

Ս. Տոմսոնը կենդանիների եւ մանուկների հոգեբան է։ Նա գրում է կենդանիների կեանքից պատկերաւոր, հետաքրքրական եւ զգացմունքներով լի գրքոյկներ. Թարգմանուած են համարեա եւրոպական բոլոր լեզուներով։

«Հասկերի» խմբագրութիւնը բաւականին յօդուածներ եւ գրքոյկներ է թարգմանել այդ հեղինակից։ Այդ շարքի վերջին օղակն է «Թեաւորը», մի պոստային աղաւնու պատմութիւնը։

Ընթերցողի աչքի առաջ կենդանի կերպով զարգանում է մի հերոս աղաւնու կեանքի պատկերները մինչեւ նրա ողբերգական մահը։ Այս պատկերն այնպէս է ազդում, ինչպէս սոցիալական կեանքից վերցրած մի դիպուածի նկարագիրը։

Գրքոյկը թարգմանուած է կանոնաւոր եւ սահուն լեզուով։ Արժէ, որ այդ տարածուի մեր դպրոցներում։ Է.

---

ԳՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆ

Ռուս յայտնի բանաստեղծ Վալերիյ Բրիւսովը «Русская Мысль»-ի մայիս ամսուայ համարի մէջ տպագրել է 5 ոտանաւոր Въ Древней Арменіи ընդհանուր վերնագրով, որոնցից Ա.—ը կրում է «Къ Арарату» վերտառութիւնը, Բ.—ը «Въ Баку», Գ-ը «Въ Тифлисѣ» եւ Ե.—ը «Араратъ изъ Эривани».

---

[1]) Այս ակունքի մօտ է սպանւում Սասունցի Դաւիթը, որու արեան միակ կաթիլէն գոյացաւ Մեղրագետի առաջին նունուֆար ծաղիկը (ժողովրդական վէպ)։

## ՊՈՍՏ-ԱՐԿՂ

**Աշտարակ**, Հ. Փ. Գ.-ին.-Սիրով կըտպենք փաստացի, հակիրճ թղթակցութիւններ եւ տեղեկութիւններ ազգային եւ հասարակական կեանքի. իսկ բանաստեղծութիւններ միմիայն ընտրական եւ ոչ վանկական չափով։ Կարդացէք ուշի ուշով Համբաւաբեր ում մեր աշխատակից պ. Մ. Աբեղեանի ուսումնասիրութիւնը «Հայոց տաղաչափութեան մասին»։

## ՎՐԻՊԱԿ

Վրիպակներ. «Համբաւաբեր»-ի համար 22, էջ 634, տող 14 ներքեւից «Հայկ Ս.»-ի փոխարէն պիտի լինի «Հայկ Տէր-Միքայէլեան», էջ 695, տող 1 վերեւից «Թիւը» պիտի լինի «Թուի հետ»։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрэссъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной цен

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Ալէքսանդրապոլի գաւառում գտնուող որբերի*

*Նոյեմբ. եւ դեկտ. 1915 թ.*

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող կենդ. մնաց մեր քով | Ծնողների տեղը | Գրաճանաչ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| | *Աղի Եաման* | | | | | | |
| 160 | Աւդոեան Յովհաննէս | Մանազկերտ | 12 | չունի | — | — | |
| 161 | Գասպարեան Մուշեղ | » | 12 | մայր | — | — | |
| 162 | » Փինջօ | » | 8 | » | — | — | |
| 163 | Գրիգորեան Անգին | Տօլադպաշ | 15 | հայր | — | — | |
| 164 | » Նարգոս | » | 6 | » | — | — | |
| 165 | Կարապետեան Սաթենիկ | Գանձակ | 12 | մայր | — | — | |
| 166 | Ղուկասեան Մայրջանիկ | » | 8 | » | — | — | |
| 167 | Կնեադչեան Սէյրան | » | 12 | ծեր հայր | — | — | |
| 168 | » Մարիամ | » | 15 | » | — | — | |
| 169 | » Նիկոլ | » | 8 | » | — | — | |
| 170 | » Արշէն | » | 9 | մայր | — | — | |
| 171 | Մկրտչեան Սմբատ | Մանազկերտ | 13 | չունի | — | — | |
| 172 | » Աղաւնի | » | 6 | » | — | — | |
| 173 | Մելքոնեան Ֆահրամազ | » | 6 | մայր | — | — | |
| 174 | Մուրադեան Մարգարիտ | Գանձակ | 12 | կոյր մայր | — | — | |
| 175 | Յարութիւնեան Վարդկէս | Մանազկերտ | 8 | ծնողք | — | — | |
| 176 | » Լեոն | » | 11 | » | — | — | |
| 177 | » Խանէ | » | 13 | հայր | — | — | |
| 178 | Յովհաննիսեան Ջնգօ | » | 15 | մայր | — | — | կոյր |
| 179 | » Դիլբար | » | 14 | » | — | — | |
| 180 | Պետրոսեան Շուշան | Տօլադպաշ | 6 | մայր | — | — | |
| 181 | » Ջադար | Գանձակ | 12 | » | — | — | |
| 182 | » Գրիգոր | » | 9 | » | — | — | |
| 183 | » Հայաստան | » | 6 | » | — | — | |
| | *Փիրթիքեան* | | | | | | |
| 184 | Տ. Մարտիրոսեան Մկրտիչ | Խասմիկ | 4 | մայր | — | — | |
| 185 | Մուրադեան Ֆարսանդ | » | 10 | հայր | — | — | |
| 186 | » Ազատ | » | 8 | » | — | — | |
| 187 | » Զըլֆօ | » | 6 | » | — | — | |
| 188 | » Քեարամ | » | 12 | » | — | — | |
| 189 | Մանուկեան Կնեազ | Զըլկան | 3 | պապ | — | — | |
| 190 | » Ատլաս | » | 4 | » | — | — | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 191 | Յովհաննիսեան Կարապետ | Խասմիկ | 6 | հայր մայր | — | — | |
| 192 | » Մկրտիչ | » | 4 | » | — | — | |
| 193 | » Սիրանոյշ | » | 8 | » | — | — | |
| 194 | » Յովհաննէս | » | 6 | » | — | — | |
| 195 | » Քեարամ | » | 7 | մայր | — | — | 25 տար. եղբայր |
| 196 | Պետրոսեան Անոյշ | » | 8 | մայր | — | — | |
| 197 | » Բրաբիոն | » | 5 | » | — | — | |
| | **Մուսլուղլի** | | | | | | |
| 198 | Գէորգեան Կեակօ | Խաստուր | 10 | չունի | — | — | |
| 199 | » Յակոբ | Մոլլա Սուլէյմ. | 5 | — | — | — | |
| 200 | » Վերգինէ | » | 7 | — | — | -- | |
| 201 | Գրիգորեան Ասլաս | Խաստուր | 7 | հ. մայր | — | — | |
| 202 | » Թովմաս | » | 1 | » | — | — | |
| 203 | Թովմասեան Շուշան | » | 12 | մայր | — | — | |
| 204 | » Եղիսաբեթ | » | 10 | » | — | — | |
| 205 | » Թերէզ | Ալաշկերտ | 8 | պապ | — | — | |
| 206 | » Պուրազ | » | 3 | » | — | — | |
| 207 | » Անախաս | » | 6 | » | — | — | |
| 208 | Թովմասեան Աւետիս | Երիցու | 12 | մայր | — | — | |
| 209 | » Մարիամ | » | 6 | » | — | — | |
| 210 | » Քիշմիշ | » | 3 | » | — | — | |
| 211 | Մկրտչեան Միսակ | Խաստուր | 13 | » | — | — | |
| 212 | » Ասանէթ | » | 9 | » | — | — | |
| 213 | » Իւղաբեր | » | 6 | » | — | — | |
| 214 | » Վահան | » | 12 | հայր մայր | — | — | |
| 215 | » Մարկոս | » | 12 | » | — | — | |
| 216 | Մելիքեան Միսակ | » | 10 | խորթ մայր | — | — | |
| 217 | » Լեոն | » | 12 | » | — | — | |
| 218 | » Վահան | » | 9 | » | — | — | |
| 219 | Յակոբեան Սեդրակ | Ալաշկերտ | 12 | պապ | — | — | |
| 220 | Յակոբեան Միսակ | » | 7 | » | — | — | |
| 221 | » Տալիթ | » | 6 | » | — | — | |
| 222 | » Եսթեր | » | 3 | » | — | — | |
| 223 | Զաքչեան Մկրտիչ | Երիցու | 4 | հայր | — | — | Տաճկ. զինուոր |
| 224 | » Ստեփաննոս | » | 2 | » | — | — | |
| 225 | » Կեակօ | » | 10 | » | — | — | |
| 226 | » Անդրանիկ | » | 7 | » | — | — | |
| | **Ձիթեհանքով** | | | | | | |
| 227 | Տ. Աւետիսեան Սեդրակ | Մանազկերտ | 12 | հայր մայր | — | — | 25 տար. եղբայր |
| 228 | » Հմայեակ | » | 8 | » | — | — | |
| 229 | Բարօյեան Յակոբ | » | 13 | հայր | — | — | |
| 230 | » Նիգեար | » | 8 | » | — | — | |
| 231 | Բաւէեան Աֆանդի | Գաչօխցի | 3 | մայր | — | — | |
| 232 | » Սէյրան | » | 5 | » | — | — | |
| 233 | Գասպարեան Գէորգ | Խաստուր | 7 | հայր մայր | — | — | 28 տար. եղբայր |
| 234 | » Խաթուն | » | 12 | » | — | — | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 235 | Տ. Մարտիրոսեան Շաքրի | Մանազկերտ | 8 | ծեր. հ. մայ. | — | — | |
| 236 | » Խանէ | » | 12 | " | — | — | |
| 237 | Մանուկեան Ասատուր | » | 10 | չունի | — | — | 20 տար. եղբայր |
| 238 | » Գուչէ | Տօլադպաշ | 2 | մայր | — | — | |
| 239 | » Ջիջօ | » | 6 | " | — | — | |
| 240 | Մուշեղեան Շուշան | Գեազօխ | 9 | չունի | — | — | |
| 241 | » Շամիլ | » | 6 | չունի | — | — | |
| 242 | Միքայէլեան Միսակ | Մանազկերտ | 12 | չունի | — | — | 20 տար. եղբայր |
| 243 | Յովհաննիսեան Վարդհէր | » | 5 | հ. մայր | — | — | |
| 244 | » Մուշեղ | " | 8 | " | — | — | |
| 245 | » Սալտաթ | " | 12 | " | — | — | |
| 246 | Տ. Շմաւոնեան Բեարամ | " | 7 | չունի | — | — | |
| 247 | » Ղազար | " | 5 | " | — | — | |
| 248 | » Սիրուն | " | 5 | մայր | — | — | |
| 249 | » Վարդանոյշ | " | 4 | " | — | — | |
| 250 | Ումրոյեան Սիմէոն | Տօլաղբաշ | 12 | " | — | — | |
| 251 | » Աւետիս | " | 10 | " | — | — | |
| 252 | » Դեղօ | " | 8 | " | — | — | |
| 253 | » Ալթուն | " | 6 | " | — | — | |
| 254 | Պապոեան Միսակ | Մանազկերտ | 7 | հայր | — | — | Ցաւագար |
| 255 | » Օսկան | " | 14 | " | — | — | |
| 256 | » Եաղութ | » | 9 | " | — | — | |
| 257 | Սարգսեան Ազիր | » | 11 | հայր | — | — | |
| 258 | » Մանաւաղ | " | 8 | " | — | — | |
| 259 | Վարդանեան Ֆարմօ | Տօլադպաշ | 13 | հայր մ. | — | — | |
| 260 | » Թալալ | " | 10 | " | — | — | |
| 261 | Փիլօեան Միքայէլ | | 6 | մայր | — | — | |
| 262 | » Խօսրով | » | 2 | " | — | — | |
| 263 | » Հոռոմ | " | 8 | " | — | — | |
| | **Ջարչչի** | | | | | | |
| 264 | Այվազեան Ֆառէ | Կողէյրոն | 15 | մայր | — | — | |
| 265 | » Ջաչէ | " | 10 | " | — | — | |
| 266 | Կարօեան Խասիկ | Ղարաղոյ | 9 | քոյր | — | — | |
| 267 | Մարկոսեան Մեսրոպ | " | 10 | մայր | — | — | Մեծ եղբայր |
| 268 | » Խանէ | " | 12 | " | — | — | |
| 269 | Մխօյեան Մանէ | " | 4 | մ. և տատ | — | — | |
| 270 | » Գեարան | Գեազօխ | 5 | " | — | — | |
| 271 | » Եսթեր | " | 3 | " | — | — | |
| 272 | Մարգարեան Մանիշակ | " | 14 | մայր | — | — | |
| 273 | » Ֆարօ | " | 5 | " | — | — | |
| 274 | Մահլամեան Սամսոն | Ղարաղոյ | 7 | չունի | — | — | |
| 275 | Մուրադեան Միհրան | " | 8 | մ. և մամ | — | — | |
| 276 | Յարութիւնեան Սմբատ | Խանաղլի | 13 | մայր | — | — | |
| 277 | » Անդրանիկ | " | 10 | " | — | — | |
| 278 | » Սարէ | " | 12 | " | — | — | |
| 279 | Յակովբեան Մուշեղ | Ղարաղոյ | 12 | մայր | — | — | Մեծ եղբայր |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 280 | Նուրեան | Ջիչօ | Գեաղօխ | 12 | մայր | — | — | |
| 281 | » | Վաչէ | " | 10 | » | — | — | |
| 282 | Նազարեան | Արուսեակ | Դարաղոյ | 5 | մայր տատ | — | — | |
| 283 | Սարգսեան | Արուս | Գեաղօխ | 10 | չունի | — | — | |
| 284 | » | Նշան | " | 8 | » | — | — | |
| 285 | » | Միհրան | " | 5 | մայր | — | — | |
| 286 | » | Ագնիւ | " | 7 | » | — | — | |
| 287 | » | Խաթուն | Ռուստամկէտ | 8 | մ. մեծ եղ. | — | — | |
| 288 | Փիրեան | Արմենակ | Հօրանց | 13 | մայր | — | — | |
| 289 | » | Ատլաս | " | 7 | » | — | — | |
| 290 | » | Խաչիկ | " | 4 | » | — | — | |
| | **Տաշ-ղալա** | | | | | | | |
| 291 | Աբրահամեան | Մկրտիչ | Եօնճալըխ | 12 | չունի | — | — | |
| 292 | Աղէկեան | Ալմաստ | Մանազկերտ | 16 | խորթ մայր | — | — | |
| 293 | » | Եալտուզ | " | 13 | » | — | — | |
| 294 | » | Լոյս Զուարթ | " | 9 | » | — | — | |
| 295 | Գէորգեան | Սապրէ | " | 7 | չունի | — | — | |
| 296 | Թադէոսեան | Ֆահլօ | » | 10 | մայր | — | — | |
| 297 | » | Սեդրակ | " | 7 | » | — | — | |
| 298 | » | Խաչիկ | " | 5 | » | — | — | |
| 299 | Կիրակոսեան | Հրանտ | " | 7 | » | — | — | |
| 300 | Կարապետեան | Վահան | " | 8 | » | — | — | |
| 301 | | | | | | | | |
| | Թորոսեան | Սարօ | " | 5 | չունի | — | — | |
| 302 | » | Բերսաբէ | " | 4 | » | — | — | |
| 303 | Ղարիբեան | Ռօզան | " | 7 | մայր | — | — | |
| 304 | Մանուկեան | Քոչար | " | 5 | հայր | — | — | Տաճկ. զին. |
| 305 | » | Նազար | " | 8 | » | — | — | |
| 306 | Մխէեան | Զարգան | Նուրաբին | 4 | մայր | — | — | |
| 307 | » | Խանէ | " | 5 | » | — | — | |
| 308 | » | Սարագ | " | 4 | » | — | — | |
| 309 | » | Խաթուն | " | 5 | » | — | — | |
| 310 | » | Ուրախ | " | 4 | » | — | — | |
| 311 | » | Սագլի | " | 6 | » | — | — | |
| 312 | Յովհաննիսեան | Եղիսա | Մանազկերտ | 6 | չունի | — | — | |
| 313 | » | Սարիկ | » | 10 | » | — | — | |
| 314 | » | Գեարան | » | 8 | » | — | — | |
| 315 | Յակոբեան | Մանուկ | Ղարաքլիսա | 10 | մայր | — | — | |
| 316 | » | Փայծառ | » | 7 | » | — | — | |
| 317 | » | Եսթեր | » | 8 | » | — | — | |
| 318 | Յովհաննիսեան | Շողեր | Եօնճալըխ | 12 | » | — | — | |
| 319 | Շահինեան | Կիրակոս | Մանազկերտ | 8 | » | — | — | |
| 320 | » | Քիշմիշ | » | 4 | » | — | — | |
| 321 | Ջուլհակեան | Զօզան | » | 7 | » | — | — | |
| 322 | » | Յովհան | » | 10 | » | — | — | |
| 323 | » | Ազատ | Նորատին | 5 | » | — | — | |
| 324 | » | Սէյրան | » | 7 | » | — | — | |
| 325 | » | Սադաֆ | » | 12 | » | — | — | |
| 326 | Պօղոսեան | Ագնիւ | Եօնճալըխ | 8 | » | — | — | |
| 327 | Վարդանեան | Հերիքնազ | » | 4 | մայր | — | — | |
| 328 | » | Զարգանդ | » | 2 | » | — | — | |